Պրոլետարներ բոլոր յերկրների՛, միացե՛ք

Հ. Կ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ԿՈՒԼՏՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՅԵՎ. ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 2 (56)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ հրատարակչություն—
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ՅԵՐԵՎԱՆ—1939

Պրոլետարներ բոլոր յերկրների՛, միացե՛ք

Հ Կ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ԿՈՒԼՏՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 2 (56)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ հրատարակչություն
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ՅԵՐԵՎԱՆ—1939



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ



Պատ. խմբագիր՝ Գր. ՍԻՆԱՆՅԱՆ

# Ի ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ՀԱՄ Կ(Բ)Կ ԲՈԼՈՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Պլենումի վորոշմամբ, ՀամԿ(բ)Կ հերթական 18-րդ համագումարի բացումը նշանակված է 1939 թվի մարտի 10-ին:

## 18-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐԱԿԱՐԳԸ

1. Հաշվետու զեկուցումներ՝ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի—զեկուցող ընկեր ՍՏԱԼԻՆ, Կենտրոնական վերստուգիչ Հանձնաժողովի—զեկուցող ընկեր ՎԼԱԴԻՄԻՐՍԿԻ, Կոմինտերնի Գործկոմում ՀամԿ(բ)Կ պատվիրակության—զեկուցող ընկեր ՄԱՆՈՒԻԼՍԿԻ:

2. ԽՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման յերրորդ հնգամյա պլանը—զեկուցող ընկեր ՄՈԼՈՏՈՎ:

3. Փոփոխություններ Համ Կ(բ)Կ կանոնադրության մեջ— զեկուցող ընկեր ԺԴԱՆՈՎ:

4. ՀամԿ(բ)Կ ծրագրի փոփոխման հանձնաժողովի ընտրությունը:

5. Կուսակցության կենտրոնական օրգանների ընտրությունները:

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉՈՒԹՅԱՆ ՆՈՐՄԱՆ ՅԵՎ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՐԳԸ

1) 1 պատգամավոր վճռական ձայնով՝ կուսակցության 1000 անդամից.

2) 1 պատգամավոր խորհրդակցական ձայնով՝ կուսակցության անդամության 2.000 թեկնածույից.

3) Ընտրությունները կատարվում են փակ (գաղտնի) քվեարկությամբ՝ մարզային, յերկրամասային կուսակցական կոնֆերանսներում և ազգային կոմկուսակցությունների համագումարներում: Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ղազախստանի և Ուզբեկստանի կուսկազմակերպություններում համագումարի պատգամավորների ընտրությունները կատարվում են մարզային կուսակցական կոնֆերանսներում:

4. Այն կոմունիստները, վորոնք գտնվում են Կարմիր Բանակի, Ռազմա-Ծովային Նավատորմի և ՆԳԺԿ զորամասերի կուսակ-



ցական կազմակերպություններում, 18-րդ համագումարի պատգամավորների ընտրությունները կատարում են մնացած կուսակցական կազմակերպությունների հետ միասին՝ մարզային, յերկրամասային կուսկոնֆերանսներում, կամ ազգային կոմկուսակցությունների համագումարներում:

ՀԱՄԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝

**Ի. ՍՏԱԼԻՆ**

# ԼԵՆԻՆ-ՍՏԱԼԻՆԻ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ

*Ստալինյան մեծ գիրքը—*ՀամԿ(բ)Կ պատմությունը*— տալիս է սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար, կոմունիզմի հաղթանակի համար մեր բոլշևիկյան պանծալի կուսակցության բազմամյա հերոսական պայքարի ճշմարտորեն խոր շարադրությունը: Մարքսիստական— լենինյան կենդանի մտքի փայլուն ստեղծագործությունը—* ՀամԿ(բ)Կ պատմության *ստալինյան դասագիրքը— վառ կերպով նկարագրում է նոր*



*տիպի պրոլետարական հեղափոխական կուսակցություն կազմակերպելու դժվարին, տատասկոտ ուղին, նոր տիպի կուսակցություն, որը կարողացավ հաղթահարել ամեն տեսակ դժվարությունները բանվոր դասակարգի ազատագրության գործի համար մղված դաժան պայքարում:*

*Միայն Մարքսիզմի ամուր, գրանիտյա հիմքի վրա, այն մաքրելով ամեն տեսակ՝ բերովի օպորտունիստական կեղևից, այն է՛լ ավելի զարգացնելով համաձայն պրոլետարիատի դասակարգային պայքարի Նոր պայմանների,* Լենինը *և* Ստալինը *ստեղծեցին բոլշևիկյան հզոր կուսակցություն, որը հիմնովին ցնցեց համաշխարհային կապիտալիզմի հիմքերը:*

*Գիտական սոցիալիզմի առաջին հանճարեղ հիմնադիրները—*Կ. Մարքսը և Ֆ. Ենգելսը*— հայտնագործելով մարդկային հասարակության զարգացման օրենքները և կապիտալիստական ստրկությունից ու ճնշումից նրա ազատագրության ուղիները, ապացուցեցին կապիտալիզմի կործանման անխուսափելիությունը և պրոլետարիատի հաղթանակի անխուսափելիությու-*

նը՝ նրա սեփական բանվորական հեղափոխական կուսակցության ղեկավարությամբ: Մարքսն ու Էնգելսը մշակեցին պրոլետարիատի այդպիսի մարտական հեղափոխական կուսակցության հիմնական կազմակերպական սկզբունքները:

Դեռ 1847 թվին, ստեղծելով կոմունիստների Միությունը, Մարքսն ու Էնգելսը նրա կառուցվածքի հիմքում դրին դեմոկրատական ցենտրալիզմի, բանվոր դասակարգի գործի առաջավոր, ակտիվ մարտիկներ դաստիարակելու սկզբունքը: Կոմունիստների Միության անդամներից պահանջվում էին ակտիվ աշխատանք, «հեղափոխական յեռանդ ու խանդ պրոպագանդայի մեջ», ծրագրի ընդունումն ու կատարումը, խիստ կարգապահություն և «յենթարկվել Միության վորոշումներին», ինչպես նաև վճարել անդամավճարները:

Ե՛լ ավելի զարգացնելով իրենց կազմակերպական գաղափարները, գիտական կոմունիզմի մեծ հիմնադիրները— Մարքսը և Էնգելսը—անդուլ կերպով աշխատում էին հեղափոխական պրոլետարիատի կուսակցական կազմակերպություններ ստեղ-



ծելու համար: Նրանց յեռանդուն գործունեությունը 1864 թվին պսակվեց I Ինտերնացիոնալի— Բանվորների միջազգային ընկերության— հիմնադրմամբ, վորը հսկայական դեր խաղաց համաշխարհային պրոլետարիատի հեղափոխական շարժման պատմության մեջ:

Այն ժամանակն էլ, I Ինտերնացիոնալի՝ Կ. Մարքսի կողմից գրված Սահմանադիր մանիֆեստը և ժամանակավոր կանոնադրությունն ընդգծում էին պրոլետարիատի կազմակերպվածության վիթխարի նշանակությունը, նրա համախմբվածության ուժը կուսակցության ղեկավարության տակ՝ կապիտալիզմի դեմ մղվող պայքարում:

Բոլոր պրոլետարների ուշադրությունը հրավիրելով այն բանի վրա, վոր «բանվոր դասակարգի ազատագրությունը պետք է նվաճվի հենց իր՝ բանվոր դասակարգի կողմից» և վոր այդ նշանակում է պայքարել «ամեն տեսակ դասակարգային տիրապետության վոչնչացման համար», Կ. Մարքսը, I Ինտերնացիոնալի կանոնադրության հատուկ կետի մեջ գրել է՝

«Բանվորական շարժման հաջողությունը յուրաքանչյուր յերկրում կարող է ապահովվել միայն միավորման ուժով և կազմակերպմամբ»*):

I Ինտերնացիոնալը Մարքսի զավակն է: «Բանվորների» այդ առաջին միջազգային մեծ ընկերակցությունը», ինչպես Մարքսի գերեզմանի առաջ հայտարարեց նրա լավագույն և հավատարիմ բարեկամ Ֆ. Ենգելսը, հանդիսացավ Մարքսի, վորպես հեղափոխական– մարտիկի, առաջնորդի և մտածողի, ամբողջ բազմամյա և բազմակողմանի գործունեության «պսակը»:

Սակայն Մարքսն ու Ենգելսը տվին հեղափոխական պրոլետարիատի կուսակցության միայն հիմնական ուրվագծերը: Նրանց մահվանից հետո միջազգային բանվորական շարժման մեջ սկսվեց II Ինտերնացիոնալի ոպորտունիստների անբաժան տիրապետության մի շրջան: Նրանք ամեն կերպ աշխատում եյին մարքսյան թեորիայից հանել նրա կենդանի, հեղափոխական հոգին: Խեղաթյուրելով մարքսիզմը թեո–

*) (Կ. Մարքս, Ընտիր յերկեր, հ. II, եջ՝ 324, ռուսերեն):



րիայի ու տակտիկայի բնագավառում, ոպորտունիստները խեղաթյուրեցին նաև Մարքսի ու Ենգելսի ուսմունքը պրոլետարիատի մարտական կուսակցության մասին, դավաճանելով բանվոր դասակարգի շահերին, կուսակցական աշխատանքում տարածելով հարմարվողականություն բուրժուազիայի նկատմամբ, ֆիլիստերություն, պոլիտիկանություն, սոցիալ–շովինիզմ:

Լենինը և Ստալինը վերածնեցին պրոլետարական հեղափոխական կուսակցության շինարարության կազմակերպական իդեաներն ու սկզբունքները, վորոնք հիմնադրըվել եյին Մարքսի և Ենգելսի կողմից և փականքի տակ եյին դրվել II Ինտերնացիոնալի ոպորտունիստների կողմից: Սակայն դրանով նրանք չսահմանափակվեցին: Լենինն ու Ստալինը հաջողությամբ շարունակեցին ու զարգացրին այդ իդեաները և սկզբունքները՝ համաձայն իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանի նոր պայմանների:

Բոլշևիզմի հանճարեղ հիմնադիրները— Լենինն ու Ստալինը— կարողացան մարքսիզմի գրանիտե բազայի վրա ստեղծել ու

կոփել մեր կուսակցությունը, որպես հզոր, հաղթական ուժ, որը զինված է գիտական հեղափոխական թեորիայով, ամբողջ աշխատավոր մարդկության ազատագրում է կապիտալիստական լծի մըռայլ, անտանելիորեն ծանր ճնշումից: Միայն Լենինի և Ստալինի կողմից, մարքսիստական հաստատ հողի վրա, կոփված բոլշևիկյան կուսակցությունը գտնվեց համաշխարհային պատմության նոր էտապում պրոլետարիատի առաջ կանգնած խնդիրների բարձրության վրա:

Բնորեշելով այն նորը, որ Լենինը մտցրել է հեղափոխական մարքսիստական կուսակցության կառուցման գործում, ընկեր Ստալինը մեզ սովորեցնում է.

«Մարքսն ու Ենգելսը տվել են հիմնական ուրվագծեր կուսակցության՝ որպես պրոլետարիատի առաջավոր ջոկատի մասին, առանց որի (առանց կուսակցության) պրոլետարիատը չի կարող ձեռք բերել իր ազատությունը ո՛չ իշխանությունը վերցնելու իմաստով, ո՛չ էլ կապիտալիստական հասարակությունը վերակա-



ռուցելու իմաստով: Լենինի մոտ այս բնագավառում նորն այն է, որ նա ավելի զարգացրեց այդ ուրվագծերը՝ համապատասխան պրոլետարիատի պայքարի նոր պայմաններին իմպերիալիզմի ժամանակաշրջանում, ցույց տալով, որ ա) կուսակցությունը պրոլետարիատի դասակարգային կազմակերպության բարձրագույն ձևն է՝ համեմատած պրոլետարիատի կազմակերպության այլ ձևերի հետ (արհմիություններ, կոոպերացիա, պետական կազմակերպություն), որոնց աշխատանքը նա կոչված է ընդհանրացնելու և նրան ուղղություն տալու, բ) պրոլետարիատի դիկտատուրան կարող է իրականացվել միայն կուսակցության՝ որպես նրան ուղղություն տվող ուժի՝ միջոցով. գ) պրոլետարիատի դիկտատուրան լիակատար կարող է լինել միայն այն դեպքում, յեթե նրան ղեկավարում է մի կուսակցություն, կոմունիստների կուսակցությունը, որը ղեկավարությունը չի բաժանում և չպետք է բա-

ժանի այլ կուսակցությունների հետ․
դ) առանց կուսակցության մեջ յերկաթե կարգապահություն ունենալու չեն կարող իրականացվել պրոլետարիատի դիկտատուրայի խնդիրները՝ շահագործողներին ճնշելու և դասակարգային հասարակությունը սոցիալիստական հասարակության վերակառուցելու վերաբերյալ»*)

Լենինի և Ստալինի համար, բազմամյա պայքարը նոր տիպի մարտական, հեղափոխական կուսակցության համար, պսակվեց աշխարհի մեկ վեցերորդ մասում կապիտալիզմը տապալած և սոցիալիստական հասարակության հոյակապ շենքը կառուցած պրոլետարիատի համաշխարհային պատմական հաղթանակներով:

ՀամԿ(բ)Կ պատմությունն ակնառու կերպով ցույց է տալիս, թե ներկուսակցական պայքարի ինչպիսի բարդ պայմաններում են Լենինն ու Ստալինը կոփել բոլշևիզմի մարտական կազմակերպական զենքը: Լենինի և Ստալինի այդ պայքարն

*) (Ստալին, «Լենինիզմի հարցերը», եջ 226–227):



սկսվեց դեռ կուսակցության II համագումարից շատ առաջ: Դեռևս լենինյան «Ի՞նչ անել» հիանալի գրքում, որ գրվել է 1902 թվին, շարադրվել է մարքսիստական կուսակցության կառուցման Լենինյան հանճարեղ պլանը:

Իրագործելով նոր տիպի մարքսիստական կուսակցության կառուցման պլանը, Լենինը և Ստալինը անողոք պայքար մղեցին օպորտունիզմի, պոչականության իդեոլոգիայի դեմ, տարերայնության առաջ խոնարհվելու և բանվորական շարժման մեջ սոցիալիստական գիտակցության դերը նսեմացնելու դեմ:

Լենինյան կազմակերպական պլանի համար մղվող պայքարը կատաղի բնույթ ստացավ 1903 թվին տեղի ունեցած II համագումարից հետո, որտեղ առանձնապես ցայտուն կերպով դրսևորվեցին կազմակերպական լուրջ տարաձայնությունները, որոնք կուսակցությունը բաժանեցին յերկու մասի— բոլշևիկների և մենշևիկների:

Ինչպես ասված է ՀամԿ(բ)Կ պատմության մեջ, II համագումարը «կազմակեր-

պական հարցերի բնագավառում իր դրության բարձրության վրա չգտնվեց, տատանումներ ունեցավ, յերբեմն նույնիսկ գերակշռություն եր տալիս մենշևիկներին, ու թեև վերջում նա ուղղվեց, այնուամենայնիվ, վոչ միայն չկարողացավ մերկացնել մենշևիկների օպորտունիզմը կազմակերպական հարցերում ու կուսակցության մեջ նրանց մեկուսացնել, այլև նույնիսկ չկարողացավ կուսակցության առաջ նման խնդիր դնել»: Հենց դրա համար էլ բոլշևիկների և մենշևիկների պայքարը II համագումարից հետո վոչ միայն չխաղաղվեց, այլ ընդհակառակը է՛լ ավելի խիստ բորբոքվեց, է՛լ ավելի սրվեց, մերկացնելով իդեոլոգիական և կազմակերպական հարցերում յեղած հակամարքսիստական, մենշևիկյան օպորտունիզմը:

Կազմակերպական հարցերում յեղած մենշևիկյան և տրոցկիստական օպորտունիզմին անողոք, խորտակիչ հարված հասցրեց Վ. Ի. Լենինը իր «Մի քայլ առաջ, յերկու քայլ հետ» նշանավոր գրքում, վորը լույս ընծայվեց 1904 թվի մայիսին:



Լենինյան այդ գրքում վճռական հարված է հասցվում մենշևիկներին, վորոնք կուսակցությունը քաշում եյին հետ — դեպի կազմակերպական թափթփվածություն և մանրատվածություն, դեպի աղայական-ընտանեկան խմբակայնություն, դեպի մանըր բուրժուական տնայնագործականություն, վորոնք արգելակում եյին պրոլետարիատի հեղափոխական մարքսիստական կուսակցություն ստեղծելու գործը:

II համագումարից հետո նեխված օպորտունիզմի ճահիճը գլորվելով, ամեն կերպ վիժեցնելով այդ համագումարի վորոշումների կատարումը, մենշևիկյան և տրոցկիստական պարագլուխները, ամբողջ կուսակցությունից գաղտնի կերպով ստեղծեցին իրենց հակակուսակցական, ֆրակցիոն կազմակերպությունը՝ Մարտովի, Տրոցկու և Աքսելրոդի գլխավորությամբ, վորոնք ինչպես նրանք եյին ասում, «ապստամբություն» եյին բարձրացրել «լենինիզմի դեմ»: Հին, Լենինյան «Իսկրայի» խմբագրությունն իրենց ձեռքը վերցնելով, մենշևիկներն այն դարձրին իրենց օրգանը և սկսեցին նրա եջերից քա-

բողել իրենց ապորտունիստական հայացքները, վորոնք ուղղված եյին բանվոր դասակարգի մարքսիստական հեղափոխական կուսակցության ստեղծման դեմ:

Մենշևիկները փրփուրը բերանին սանձարձակ պրոպագանդա եյին մղում և կատաղի, մերկապարանոց գործունեյություն եյին ծավալում մարքսիստական կուսակցականության դեմ: Նրանք պնդում եյին, վոր կուսակցությունը, վորպես միասնական կազմակերպական ամբողջություն, հարկավոր չե, և վոր նրա կազմում պետք ե թույլ տալ «ազատ» խմբերի ու միայնակների գոյություն, վորոնք իրավունք ունենան չենթարկվելու կուսակցական օրգանների վորոշումներին և կուսակցական կարգապահության պահանջներին: Մենշևիկները գտնում եյին, վոր յուրաքանչյուր ցանկացողի, ինչպես նաև «յուրաքանչյուր գործադուլավորի» և «յուրաքանչյուր ցուցարարի» պետք ե իրեն կուսակցության անդամ անվանելու և հայտարարելու իրավունք տալ: Իսկ բուն կուսակցությունը նրանց պատկերանում եր վորպես անորոշ, կիսելանման, անձև



մասսա, վորն անընդունակ եր ակտիվ գործողությունների՝ ցարիզմի և իմպերիալիզմի դեմ պրոլետարիատի բորբոքված դասակարգային պայքարում:

Մենշևիկների դեմ հանդես յեկան բոլշևիզմի հանճարեղ ստեղծողներ Լենինը և Ստալինը, վորոնք մերկացրին կուսակցության կազմակերպման մենշևիկյան ապորտունիստական «սխեմի» ամբողջ վնասը: Լենինը և Ստալինը յեռանդուն կերպով վճռական պայքար ծավալեցին մարտական մարքսիստական կուսակցության, պրոլետարական սոցիալիստական հեղափոխության կուսակցության համար:

Իր «Մի քայլ առաջ, յերկու քայլ հետ» գրքում Լենինը զարմանալի ուժով բացահայտեց և ջախջախեց մենշևիկյան ապորտունիզմը՝ կազմակերպական հարցերում: Այդ գրքում շարադրված լենինյան կազմակերպական դրույթները հետագայում դարձան բոլշևիզմի կազմակերպական հիմունքները: Ահա թե ինչու յուրաքանչյուր կուսակցական թե անկուսակցական բոլշևիկ, յուրաքանչյուր խորհրդային ինտելիգենտ, յուրաքանչյուր ինժեներ, տեխ

նիկ, ծառայող— մեր սոցիալիստական մեծ հայրենիքի բոլոր բազմամիլիոն կադրերը պետք է խորապես ուսումնասիրեն և լավ գիտենան այդ գիրքը:

## 1. ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՎՈՐՊԵՍ ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԱՌԱՋԱՎՈՐ ՋՈԿԱՏԸ

Լենինյան «Մի քայլ առաջ, յերկու քայլ հետ» գիրքն սկսվում է պարզ ու հակիրճ առաջաբանով, վորի մեջ ընդգծվում է, վոր կուսակցական կյանքի բոլոր փաստերն ու անցքերը, II համագումարի արձանագրությունների ու նյութերը լիովին համոզում են, վոր բոլշևիկները կուսակցության մեջ հեղափոխական թևն են, իսկ մենշևիկները՝ ոպորտունիստականը, և վոր մենշևիկների հիմնական դժբախտությունը նրանց «ոպորտունիզմն է կազմակերպական հարցերում»: Լենինը կոչ է անում խնամքով, լայն կերպով և ինքնուրույնաբար ուսումնասիրել և վերլուծել այդ բոլոր փաստերը, վորոնք ցույց են



տալիս պայքարի կենդանի պատկերը և գործերի իրական դրությունը կուսակցության մեջ:

Լենինյան ամբողջ գրքի բովանդակությունը, գիրք, վոր հագեցված է կուսակցական կենդանի փորձի խոր, հասկանալի և հարուստ ընդհանրացումով, նպատակ ունի լիովին ջախջախել ու մերկացնել մենշևիկյան ոպորտունիզմը կազմակերպական հարցերում: Ջարդ ու փշուր անելով մենշևիկների յուրաքանչյուր ոպորտունիստական դրույթը, Լենինը տալիս է ամբողջ ներկուսակցական պայքարի մանրամասն վերլուծությունը և մարքսիզմի գրանիտե բազայի վրա նշում է նոր տիպի պրոլետարական հեղափոխական կուսակցության կազմակերպական հիմունքները:

Լենինյան առաջին կազմակերպական դրույթը, վոր շարադրված է «Մի քայլ առաջ, յերկու քայլ հետ» գրքում, այն է, վոր մարքսիստական հեղափոխական կուսակցությունը բանվոր դասակարգի մի մասն է, նրա առաջավոր ջոկատը, վորը պրոլետարիատի մյուս ջոկատներից տարբերվում է իր գիտակցա-

կանությամբ, հասարակական կյանքի և նրա զարգացման օրենքների գիտությամբ, դասակարգային պայքարի օրենքների գիտությամբ իր սպառազինված լինելովը, վորի համար և ընդունակ է իր ղեկավարությամբ գլխավորելու բանվոր դասակարգի պայքարը, վորը՝ հանդիսանում է հեղափոխության հեգեմոնը: Ինչպես ասված է ՀամԿ(բ)Կ պատմության ստալինյան դասընթացի մեջ, «չի կարելի չփոթել կուսակցությունը և բանվոր դասակարգը, ինչպես չի կարելի չփոթել մասն ու ամբողջությունը, չի կարելի պահանջել, վոր ամեն մի գործադուլավոր կարողանա կուսակցության անդամ հայտարարել իրեն, վորովհետև ով չփոթում է կուսակցությունն ու դասակարգը, նա կուսակցության գիտակցականության մակարդակն իջեցնում է մինչև «ամեն մի գործադուլավորի» մակարդակը, նա վոչնչացնում է կուսակցությունը, վորպես բանվոր դասակարգի առաջավոր գիտակից ջոկատը: Կուսակցու-



թյան խնդիրն այն չէ, վոր իր մակարդակն իջեցնի մինչև «ամեն մի գործադուլավորի» մակարդակը, այլ այն, վոր բարձրացնի բանվորների մասսաներին, բարձրացնի «ամեն մի գործադուլավորի» մինչև կուսակցության մակարդակը»*)

Դեռ II համագումարից շատ առաջ և նրանից հետո Լենինը հաստատակամորեն և համառ կերպով ձգտում եր կուսակցության այնպիսի կառուցման, վորպեսզի նա լիներ բանվոր դասակարգի իրոք ակտիվ, առաջավոր և գիտակից ջոկատը, նրա քաղաքական առաջնորդն ու ղեկավարը սոցիալիզմի համար մղված դասակարգային պայքարում: «Մի քայլ առաջ, յերկու քայլ հետ» գրքում Լենինը գրում է,—

«Մենք դասակարգի կուսակցություն ենք, ուստի և գրեթե ամբողջ դասակարգը (իսկ պատերազմական ժամանակներում, քաղաքացիական պատե-

*) «ՀամԿ(բ)Կ պատմություն», եջ՝ 65, չքեղ հրատարակ. եջ 63 (հայերեն):

րաղմի եպոխայում և միանգամայն ամբողջ դասակարգը) պետք է գործի մեր կուսակցության ղեկավարությամբ, պետք է հարի մեր կուսակցությանը վորքան կարելի յե սերտորեն, բայց մանիլովշչինա և «պոչականություն» կլիներ կարծել, թե յերբևիցե գրեթե ամբողջ դասակարգը կամ ամբողջ դասակարգը կապիտալիզմի որով ի վիճակի կլինի բարձրանալու մինչև իր առաջավոր ջոկատի, իր սոցիալ-դեմոկրատական կուսակցության գիտակցականության և ակտիվության աստիճանը: Դեռևս վոչ մի խելացի սոցիալ-դեմոկրատ չի տարակուսել այն մասին, վոր կապիտալիզմի որով մինչև անգամ պրոֆեսիոնալ կազմակերպությունը (վոր ավելի պրիմիտիվ է, անպարգացած շերտերի գիտակցությանն ավելի մատչելի) ի վիճակի չե ընդգրկելու գրեթե ամբողջ կամ ամբողջ բանվոր դասակարգին: Մենք միայն խաբած կլինեյինք մեզ, մեր աչքերը փակած կլինեյինք մեր խնդիրների վիթխա-



րիության հանդեպ, նեղացրած կլինեյինք այդ խնդիրները,— յեթե մոռանայինք առաջավոր ջոկատի և նրան հարող բոլոր մասսաների տարբերությունը, յեթե մոռանայինք, վոր առաջավոր ջոկատի մշտական պարտականությունն է՝ ավելի ու ավելի լայն խավեր բարձրացնել մինչև այդ առաջավոր մակարդակը»*)։

Ջախջախելով՝ կուսակցությունը դասակարգի մեջ լուծելու, կուսակցության և դասակարգի տարբերությունները ջնջելու վնասակար, մենշևիկյան, ոպորտունիստական փորձերը, ԼԵՆԻՆԸ հիմնավորեց և ապացուցեց պրոլետարական մարքսիստական կուսակցության, վորպես դասակարգի առաջավոր, գիտակցական ղեկավարի և ավանգարդի, կառուցման անհրաժեշտությունը, վորն աշխատավորության խոշոր խավերին բարձրացնում է

*) (Լենին, հ. VI, եջ՝ 205—206 և «Համ. Կ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց» եջ՝ 63—64. չորրորդ հրատարակ. հայերեն, պետքաղ. հրատ, Յերևան 1938 թ.)։

մինչև իր մակարդակը։ Դրա մեջն էլ է, ինչպես սովորեցնում է ընկեր Ստալինը, լենինյան տիպի նոր կուսակցության առաջին առանձնահատկությունը, կուսակցության, վորը հանդիսանում է «բանվոր դասակարգի քաղաքական առաջնորդը», նրա մարտական հեղափոխական շտաբը։ Ճշտիվ վորոշելով լենինյան տիպի կուսակցության այդ կազմակերպական հիմունքը, ընկեր Ստալինը սովորեցնում է.—

«Կուսակցությունն ամենից առաջ պետք է լինի բանվոր դասակարգի առաջավոր ջոկատը։ Կուսակցությունը պետք է իր մեջ առնի բանվոր դասակարգի բոլոր լավագույն տարրերին, նրանց փորձը, նրանց հեղափոխականությունը, նրանց անձնազոհ նվիրվածությունը պրոլետարիատի գործին»*)։

Այսպես է բոլշևիզմի Առաջին կազմակերպական հիմունքը և նրա տարբերիչ առանձնահատկությունը, վոր դարձված

*) (Ի. Ստալին, «Լենինիզմի հարցերը», էջ 65)։



են Լենինի և Ստալինի կողմից և կուսակցության համար ապահովեցին ավանդարդի նրա պատմական առաջավոր դերը, վորը մեր յերկրի պրոլետարիատին հասցրեց հաղթական սոցիալիստական հեղափոխության և սոցիալիզմի կառուցման։

## 2. ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՎՈՐՊԵՍ ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾ ՋՈԿԱՏԸ

Նոր տիպի մարքսիստական պրոլետարական կուսակցությունը հանդիսանում է բանվոր դասակարգի վոչ միայն առաջավոր, գիտակից ջոկատը, այլև նրա կազմակերպված ջոկատը, վորն աչքի յե ընկնում իր խիստ կուռ համախմբվածությամբ, մոնոլիտ միասնականությամբ, բարձր կազմակերպվածությամբ և յերկաթյա կարգապահությամբ, վոր պարտադիր է նրա բոլոր անդամների համար։ Լենինյան այդ անսասան հիմունքի դեմ II համագումարում կատաղի կերպով հանդես յեկան մենշևիկներն ու տրոցկիստները։ Նրանց հաջողվեց համագումարում

անցկացնել կուսակցության կանոնադրության առաջին պարագրաֆի իրենց, մարտովյան ձևակերպումը, որի համաձայն ամեն մի ցանկացող կարող է ինքն իրեն հայտարարել կուսակցության անդամ, չգտնվել նրա և ոչ մի կազմակերպության մեջ, ակտիվորեն չմասնակցելով կուսակցական կյանքին, չենթարկվելով կուսակցական կարգապահությանը և կուսակցական որոշումներին։

Այդ մենշևիկյան դրույթները ջարդուփշուր արվեցին Լենինի կողմից «Մի քայլ առաջ, երկու քայլ հետ» գրքում։ Այդ գրքում, պաշտպանելով կուսակցության կանոնադրության առաջին պարագրաֆի իր ձևակերպումը, Լենինը ապահովում էր այնպիսի միասնական, կենտրոնացված կուսակցության ստեղծումը, որն իրոք ընդունակ է կազմակերպելու գիտակից, առաջավոր պրոլետարներին, համախմբելու բանվոր դասակարգին և նրան առաջնորդելու պրոլետարիատի դիկտատուրա նվաճելու և սոցիալիզմ կառուցելու համար։ Կուսակցության կանոնադրության առաջին պարագրաֆի Լենինյան ձևակեր-



պումը պարզ որոշում էր, որ հեղափոխական պրոլետարիատի մարքսիստական կուսակցության անդամներ կարող են լինել միայն այն մարդիկ, որոնք իրոք ակտիվորեն աշխատում են նրա կազմակերպված շարքերում, սիստեմատիկորեն և օրինակելի կերպով կատարում են կուսակցական պարտականություններն ու հանձնարարությունները, մտնում են տեղական կազմակերպության կազմի մեջ, ենթարկվում են նրան և բոլոր կուսակցական որոշումներին, անպայման պահպանում են կուսակցական կարգապահությունը, անձնվիրաբար և անվերապահորեն պայքարում են բանվոր դասակարգի գործի համար, սոցիալիզմի համար։

Լիովին բացահայտելով կազմակերպական հարցերում մենշևիկյան օպորտունիզմի ամբողջ նեխվածությունն ու վնասակարությունը, Լենինը իր գրքում հիմնավորում և ապացուցում էր, որ կուսակցությունը միայն այն ժամանակ կկարողանա իր ղեկավարությամբ գլխավորել պրոլետարիատի դասակարգային պայքարը և նրան ուղղել դեպի կոմունիզմի մեծ

նպատակը, յեթե նրա բոլոր անդամները կազմակերպվեն միասնական ընդհանուր ջոկատի մեջ, որը զոդված լինի կամքի միասնականությամբ, գործողությունների միասնականությամբ, կարգապահության միասնականությամբ»։ Ահա թե ինչու, ասում էր Լենինը, պրոլետարիատի մարքսիստական կուսակցության կազմակերպված շարքերը չի կարելի թույլ տալ յուրաքանչյուր գիմնազիստի, պրոֆեսորի, գործադուլավորի և բոլոր նրանց, ովքեր ճնշվում են կուսակցական կարգապահությունից։

Գրքում, ինչպես նաև II համագումարում, Լենինը համառ և համոզիչ կերպով պահանջում էր, որպեսզի կուսակցությունը, որպես պրոլետարիատի առաջավոր ջոկատը, իրենից ներկայացնի բանվոր դասակարգի առավել կազմակերպված, համախմբված, կարգապահ և ակտիվագույն մասը։ Լենինը գտնում էր, որ մեր կուսակցությունը չպետք է իր կազմակերպված շարքերը թույլ տա անհաստատ, անկայուն տարրերի հոսանքը, որոնք անպետք են ցարիզմի և կապիտա-



լիզմի ատելի լծից՝ հանուն ժողովրդի ազատագրման գործի համար, աներկյուղ ու անխոնջ պայքար մղելու համար։ Մեր կանոնադրության առաջին պարագրաֆի մարտովյան ձևակերպման օպորտունիզմը, Լենինը գրում էր.—

«Խոսքով Մարտովի ֆորմուլան պաշտպանում է պրոլետարիատի լայն խավերի շահերը. գործով այդ ֆորմուլան կծառայի պրոլետարական դիսցիպլինայից և կազմակերպությունից խորշող բուրժուական ինտելիգենցիայի շահերին։ Ոչ ոք սիրտ չի անի ժխտելու, որ ինտելիգենցիան, իբրև ժամանակակից կապիտալիստական հասարակությունների առանձին շերտ, ընդհանուր առմամբ և ամբողջովին բնորոշվում է հենց ինդիվիդուալիզմով և դիսցիպլինայի ու կազմակերպման անընդունակությամբ»*)։

*) (Լենին, հ. VI, էջ 212)։

Յեվ, այնուհետև, Լենինն ընդգծում եր.—

«Պրոլետարիատը չի վախենում կազմակերպությունից և դիսցիպլինայից... պրոլետարիատը չի ջանա, վոր կազմակերպության մեջ մտնել չցանկացող պ. պ. պրոֆեսորներն ու գիմնազիստները կուսակցության անդամ համարվեն կազմակերպության հսկողության տակ կատարվող աշխատանքի համար... վոչ թե պրոլետարիատին, այլ մեր կուսակցության մեջ գտնվող ինտելիգենտներից վոմանց է պակասում ինքնադաստիարակությունը՝ կազմակերպության և դիսցիպլինայի վոգով» *)

Հետևաբար, բոլշևիզմի յերկրորդ կազմակերպական հիմունքը հանդիսանում է Լենինյան պահանջը կուսակցության շինարարության մասին, վորպես պրոլետարիատի միասնական, կազմակերպված ամբողջական, կուռ համախմբված և կարգապահ առաջավոր ջոկատի: Լենինյան տիպի նոր կուսակցության այդ առանձնահատ-

*) (Լենին. հ. VI, եջ 9[illegible]):



կությունը կլասիկորեն ձևակերպել է ընկեր Ստալինը, վորը մեզ սովորեցնում է.—

«Այն միտքը, թե կուսակցությունը կազմակերպված ամբողջություն է, ամրապնդված է մեր կուսակցության կանոնադրության առաջին կետի Լենինի հայտնի ձևակերպման մեջ, վորտեղ կուսակցությունը դիտվում է վորպես կազմակերպությունների գումար, իսկ կուսակցության անդամները՝ վորպես կուսակցության կազմակերպություններից մեկնումեկի անդամներ: Մենշևիկները, վորոնք առարկում եյին այս ձևակերպման դեմ դեռևս 1903 թվին, դրա փոխարեն առաջարկում եյին կուսակցության մեջ ինքնահաշվեգրելու (самозачисление) «սիստեմի», կուսակցության անդամի «կոչումը» այս կամ այն կերպ կուսակցությանն օժանդակող, բայց կուսակցական կազմակերպություններից և վոչ մեկի մեջ չմտած ու մտնել չցանկացող ամեն մի «պրոֆեսորի» ու «գիմնազիստի», ամեն մի «համա-

կրողի» ու «գործադուլավորի» վրա տարածելու «սիստեմ»: Հազիվ թե հարկ կա ապացուցելու, որ այս օրիգինալ «սիստեմը», յեթե այն ամրանար մեր կուսակցության մեջ, անխուսափելիորեն կունենար այն հետեվանքը, որ կուսակցությունը կգերլցվեր պրոֆեսորներով ու գիմնազիստներով և կայլասերվեր ու կդառնար հեղեղուկ, չձևավորված, կազմալուծված մի «գոյացում», որը կորչում է «համակրողների» ծովում, ջնջում է սահմանը կուսակցության ու դասակարգի միջև և տապալում է կուսակցության խնդիրը՝ անկազմակերպ մասսաներին մինչև առաջավոր ջոկատի մակարդակը բարձրացնելու վերաբերմամբ: Ինչ ասել կուզի, որ այդպիսի օպորտունիստական «սիստեմի» պարագայում մեր կուսակցությունն անկարող կլիներ բանվոր դասակարգի կազմակերպող միջուկի դերը կատարելու մեր հեղափոխության ընթացքի մեջ»*) :

*) (Ի. Ստալին, «Լենինիզմի հարցերը», էջ 88)։



Կուսակցության մասին լենինյան-ստալինյան ուսմունքի էությունն այն է, որ կուսակցությունը կուսակցական կազմակերպությունների գումար է, նրանց ամբողջական և միասնական սիստեմ՝ ղեկավարման բարձր ու ցածր օրգաններով: Կուսակցությունը, ինչպես սովորեցնում է ընկեր Ստալինը, «ինքը հանդիսանում է կարգապահության և կազմակերպվածության մարմնավորում»:

Այսպես է մարքսիզմ-լենինիզմի յերկրորդ կազմակերպական հիմունքը, առանց որի անհնարին կլիներ մեր կուսակցության հաղթանակը նրա բազմաթիվ թշնամիների — մենշևիկների, ստոր տրոցկիստների, բուխարինականների և այլ դավաճանների վրա, որոնք դարձան արյունռուշտ ֆաշիզմի վարձկան գործակալները:

## 3. ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՊԵՍ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՁԵՎԸ

Ստեղծելով և աճեցնելով նոր տիպի մարքսիստական կուսակցություն, Լենինն

ու Ստալինը միշտ ընդգծում եյին կուսակցության հսկայական դերը վորպես պրոլետարիատի դասակարգային կազմակերպության բարձրագույն ձևի։ Լենինյան «Մի քայլ առաջ, յերկու քայլ հետ» գրքում հիշվում ե բոլշեվիկյան կուսակցության այդ կազմակերպական հիմունքը, բոլշևիկյան կուսակցություն, վոր կոչված եր ղեկավարելու բանվոր դասակարգի մնացած բոլոր բազմաթիվ կազմակերպությունները։

Լենինը գտնում եր, վոր հենց գործով դասակարգի բարձրագույն կազմակերպական խնդիրների գիտակցական արտահայտիչը լինելու համար մեր «կուսակցությունը պետք ե կարողանա այնպիսի կազմակերպական հարաբերություններ մշակել, վորոնք կարողանան գիտակցականության վորոշ մակարդակ ապահովել և սիստեմատիկաբար բարձրացնել այդ մակարդակը»*)։ Յեվ դրա համար ել Լենինը յեռանդուն կերպով և անդադար պայքարում եր ամեն

*) Վ. Ի. Լենինի «Մի քայլ առաջ, յերկու քայլ հետ», Յերկ. ժող. հ. VI, եջ 217—218։



տեսակ պոչականության դեմ, «ինտելիգենտական անկայունության և լղրծունականության (ХЛЮПКОСТИ) և ոպորտունիզմի դեմ՝ կազմակերպական հարցերում։

Միայն նոր տիպի մարքսիստական կուսակցությունը, համախմբելով և պայքար տանելով բանվոր դասակարգի ամենալայն խավերի բոլոր կազմակերպություններին, ամեն որ ղեկավարելով նրանց սոցիալիզմի համար մղվող վճռական ճակատամարտերում,— իրագործում է պրոլետարիատի դասակարգային կազմակերպության բարձրագույն ձևի իր առաջավոր դերը։ Այդ բանը վառ կերպով ձևակերպված է ՀամԿ(բ)Կ պատմության Ստալինյան դասընթացի մեջ, վորտեղ ասված է, վոր «կուսակցությունը, վորպես կազմակերպության բարձրագույն ձևը, վոր բաղկացած է դասակարգի լավագույն մարդկանցից՝ զինված առաջավոր թեորիայով դասակարգային պայքարի որենքների ճանաչմամբ և հեղափոխական շարժման փորձառությամբ,— բոլոր հնարավորություններն ունի ղեկավարելու և պարտավոր է ղեկավարել բանվոր դասակարգի

նյուս բոլոր կազմակերպությունները»։

Պրոլետարիատի հզոր ուժը — նրա կուսակցության մեջ է, վորպես առավել սուր սրված՝ կազմակերպության, առավել համախմբված և մարտերում կոփված և առավել զինված՝ հեղափոխության որենքների, սոցիալիզմի որենքների գիտությամբ։ «Պրոլետարիատը,— սովորեցնում եր Լենինը,— իշխանության համար մղած մարտում կազմակերպությունից բացի ուրիշ զենք չունի»։ Ահա թե ինչու Լենինը իր «Մի քայլ առաջ, յերկու քայլ հետ» գրքում, անողոք կերպով ջարդ ու փշուր եր անում մենշևիկների՝ կուսակցության ղեկավար դերն ամեն կերպ նսեմացնելու ու նվաստացնելու անպետք ձգտումը, վորը կազմալուծում, թուլացնում և զինաթափում եր պրոլետարիատին։

Բանվոր դասակարգի մարտունակությունը, մարտի համար նրա պատրաստ լինելն ուղղակի, անմիջականորեն կախումն ունեն կուսակցության վորպես «պրոլետարների դասակարգային միավորման բարձրագույն ձևի» ղեկավարումից։ Կուսակցությունն ընդունակ է գլխավորելու և



ղեկավարելու պրոլետարիատի պայքարը և նրա բազմաթիվ կազմակերպությունները նրա համար, վոր նա, վորպես դասակարգային կազմակերպության բարձրագույն ձևը, կազմված է բանվոր դասակարգի լավագույն, կայուն և անձնվեր մարդկանցից, վորոնք կոփված և ստուգված են մարտում, հեղափոխական շարժման հարուստ փորձ ունեն, զինված են առաջավոր, հեղափոխական մարքսիստական — լենինյան թեորիայով, գիտեն հասարակական զարգացման և դասակարգային պայքարի որենքները։

Մեր բոլշևիկյան կուսակցությունը դրա համար, ինչպես սովորեցնում է ընկեր Ստալինը, բոլոր տվյալներն ունի

> «նախ՝ այն պատճառով, վոր կուսակցությունը հավաքակայանն է բանվոր դասակարգի լավագույն տարրերի, վորոնք ուղղակի կապեր ունեն պրոլետարիատի անկուսակցական կազմակերպությունների հետ և շատ հաճախ ղեկավարում են նրանց. յերկրորդ՝ այն պատճառով, վոր կուսակցությունը, վորպես բանվոր դասակարգի լա-

վագույն մարդկանց հավաքական, լավագույն դպրոցն է՝ բանվոր դասակարգի այնպիսի լիդերներ պատրաստելու համար, վորոնք ընդունակ են ղեկավարելու իրենց դասակարգի կազմակերպության բոլոր ձևերը. յերրորդ՝ այն պատճառով, վոր կուսակցությունը, վորպես բանվոր դասակարգի լիդերների լավագույն դըպրոց, իր փորձով և հեղինակությամբ միակ կազմակերպությունն է, վորն ընդունակ է կենտրոնացնելու պրոլետարիատի պայքարի ղեկավարությունը և, այդպիսով, բանվոր դասակարգի բոլոր ու ամեն տեսակի անկուսակցական կազմակերպությունները վերածելու կուսակցությունը դասակարգի հետ միացնող սպասարկու օրգանների և շարժահաղորդ փոկերի. Կուսակցությունը պրոլետարիատի դասակարգային կազմակերպության բարձրագույն ձևն է»*)

*) (Ի. Ստալին, «Լենինիզմի հարցերը», էջ 91):



Այսպես է լենինյան տիպի մարքսիստական հեղափոխական կուսակցության յերրորդ կազմակերպական հիմունքը:

Միայն Լենինի և Ստալինի շնորհիվ հաջողվեց մերկացնել և ամբողջությամբ տապալել մենշևիկյան, օպորտունիստական «թեորիաները» բանվոր դասակարգի անկուսակցական կազմակերպությունների «անկախության» և «չեզոքության» մասին: Այդ «թեորիաները» ձեռնտու եյին կապիտալիստներին: Լիովին իրականացնելով պրոլետարիատի դասակարգային կազմակերպության բարձրագույն ձևի իր դերը, կուսակցությունը կարողացավ գործնականում հասնել բանվորական բոլոր անկուսակցական կազմակերպությունների ճիշտ ղեկավարմանը և նրանց համախմբել պրոլետարական սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար մղվող պայքարում: Միայն լենինյան-ստալինյան կուսակցությունը, ինչպես այդ ցույց տվեց ռուսական յերեք հեղափոխությունների ամբողջ հարուստագույն փորձը, հանդիսացավ դասակարգային կազմակերպության միակ, իրոք բարձրագույն ձևը, վորը կարողա-

ցավ ապահովել պրոլետարիատի դիկտատուրայի նվաճումը և սոցիալիզմի կառուցումը:

## 4. ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՎՈՐՊԵՍ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՀԵՏ ԿԱՊԻ ՄԱՐՄԸՆԱՎՈՐՈՒՄԸ

Լենինը և Ստալինը միշտ ընդգծել են մասսաների հետ կուսակցության ամենասերտ, անխզելի կապի ամբողջ կարևորությունը:

Դեռևս 1895 թվին Լենինը համախմբում էր պրոլետարական մասսաներին, կազմակերպում էր բանվորական մարքսիստական խմբակներ, Պետերբուրգում ստեղծեց «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միությունը»: Ինչպես ասված է կուսակցության պատմության ստալինյան դասագրքում, «Լենինի «Պայքարի Միության» առաջ դնում էր մասսայական բանվորական շարժման հետ ավելի սերտ կապվելու խնդիրները»: Դրանով էլ Լենինը արագացնում էր բանվոր դասակարգի հեղափոխական մարքսիստական կուսակցության նախապատրաստումն ու առաջացումը:



Լենինը և Ստալինը բանվորական շարժումը միացրին սոցիալիզմի հետ, մերկացրին ու ջախջախեցին նարոդնիկներին, «լեգալ մարքսիստներին» ու էկոնոմիստներին, վորոնք պրոլետարիատին շեղում էին սոցիալիզմի համար մղած նրա քաղաքական պայքարից: Դեռևս 1902 թվին «Ի՞նչ անել» գրքում Լենինը կուսակցությանը կոչ էր անում ավելի ամուր, ավելի ուժեղ կապվել աշխատավորության ամենալայն խավերի հետ, բանվոր դասակարգի, վորպես գալիք հեղափոխության հեգեմոնի, բազմամիլլիոն մասսաների հետ: Լենինն այն ժամանակ սովորեցնում էր,—

«Յուրաքանչյուր գործարան պետք է մեր ամրոցը լինի»:

Անդուլ կերպով ամրացնել, ընդարձակել, կուսակցության կապերը ժողովրդի հետ, ամեն որ քաղաքականապես դաստիարակել բանվոր դասակարգին և աշխատավորության ամենալայն մասսաներին, ղեկավարել նրանց, սովորել նրանցից— ահա թե ինչ է միշտ պահանջում լենինյան–ստալինյան կուսակցությունը: Դրա մեջ է, ինչպես մեզ սովորեցնում է ընկեր

Ստալինը,—«բոլշևիկյան ղեկավարման ուժն ու անպարտելիությունը»։

Իր «Մի քայլ առաջ, երկու քայլ հետ» գրքում Լենինն առանձնապես ընդգծել է, թե ինչպիսի վիթխարի նշանակություն ունի կուսակցության կապը մասսաների հետ։ Լենինն ասում է,—

«Որպեսզի սոցիալ-դեմոկրատական կուսակցություն լինենք, պետք է ձեռք բերենք հենց դասակարգի օժանդակությունը»*)։

Այդ ամենօրյա օժանդակությունը բանվոր դասակարգը միշտ ցույց է տվել իր մոտիկ ու հարազատ լենինյան-ստալինյան կուսակցությանը, որի ամրապնդմամբ ու աճով նա խիստ շահագրգռված է։

Կուսակցության զարգացման ու պայքարի պատմական բոլոր էտապներում Լենինը և Ստալինը միշտ առանձնահատուկ հոգատարություն են ցույց տվել մասսաների հետ կուսակցության կապերի ուժեղացման ու բազմապատկման մասին։ Դրա շնորհիվ

*) (Վ. Ի. Լենին, «Մի քայլ առաջ, երկու քայլ հետ», Երկ. ժող. հ. VI, էջ 208)։



մեր կուսակցությունը նվաճել է ամբողջ բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության և ինտելիգենցիայի անբաժան վստահությունը։ Միևնույն ժամանակ, հենվելով անխախտելի կապերի և մասսաների վստահության վրա, մեր կուսակցությունը, որպես գործիք բանվոր դասակարգի ձեռքին, ապահովել է պրոլետարիատի դիկտատուրայի նվաճումն ու ամրապնդումը, համաշխարհային-պատմական դեր է խաղացել սոցիալիստական հեղափոխության զարգացման բոլոր էտապներում։

Բնորոշելով բոլշևիկյան կուսակցության այդ կարևորագույն առանձնահատկությունը, ընկեր Ստալինը մեզ սովորեցնում է.—

«Կուսակցությունը հիմնական ղեկավար սկզբունքն է պրոլետարների դասակարգի ներսում և այդ դասակարգի կազմակերպությունների մեջ։ Բայց սրանից բնավ չի հետևում, թե կուսակցությունը կարելի յե դիտել որպես ինքնանպատակ, որպես ինքնաբավ ուժ։ Կուսակցությունը պրոլետարների դասակարգային միավորման միայն բարձ-

րագույն ձևը չէ, դրա հետ մեկտեղ նա մի գործիք է պրոլետարիատի ձեռքին՝ դիկտատուրա նվաճելու համար՝ յերբ այն դեռ նվաճված չէ»*)

Յեվ այնուհետև ընկեր Ստալինը մատնացույց է անում.—

«Բայց կուսակցությունը հարկավոր է պրոլետարիատին վոչ միայն դիկտատուրա նվաճելու համար. կուսակցությունը նրան ե՛լ ավելի հարկավոր է նրա համար, վոր դիկտատուրան իր ձեռքում պահի, ամրացնի ու այն ընդարձակի սոցիալիզմի լիակատար հաղթության շահի համար»**):

Յերեք հեղափոխությունների հարստագույն փորձը և առանձնապես ամբողջ հոկտեմբերյան ժամանակաշրջանը— անհերքելի ապացույց են կուսակցության, վորպես աշխատավորության բազմամիլիոն մասսաների հետ պրոլետարիատի առաջա-

*) (Ի. Ստալին, «Լենինիզմի հարցերը», եջ 91–92):

**) (Նույն տեղում, եջ 92):



վոր կոմունիստական ջոկատի կապերի մարմնավորման մասին լենինյան-ստալինյան մեծ ուսմունքի հաղթանակի:

Բոլշևիկյան կուսակցությունն իր ամբողջ պատմությամբ, իր ամբողջ հերոսական գործունեությամբ գործով ապացուցել է, վոր նա պայքարում է միայն աշխատավորության շահերի համար, ամբողջ ժողովրդի ազատ ու կուլտուրական, յերջանիկ և ուրախ կյանքի համար: Նորանոր հաղթանակներ տանելով կոմունիզմի համար մղվող պայքարում, մեր կուսակցությունն աճում է, շրջապատված բազմամիլիոն ժողովրդական մասսաների անսահման վստահությամբ, նվիրվածությամբ և սիրով:

Լենինի-Ստալինի մեր կուսակցությունը միշտ ամրապնդում, բազմապատկում է իր անխզելի կապերը ժողովրդի հետ: Այդ հանդիսանում է մեր յերկրում սոցիալիզմի նորանոր վիթխարի հաջողությունների և հաղթանակների յերաշխիքը, ամբողջ խորհրդային ժողովրդի բարոյական-քաղաքական աննախընթաց միասնականության յերաշխիքը: Լենինյան-ստալինյան հզոր

կուսակցության անխորտակելի ուժն ու ամրությունը մասսաների, ժողովրդի հետ նրա արյունակցական կապի մեջ է։ Միայն մեր յերջանիկ, սոցիալիստական յերկրումն են ի մի ձուլվել յերկու հաղթական ուժեր— ժողովուրդը և կոմունիզմը—վորոնք փոթորկի նման հեղափոխության ճանապարհից ավլում, դեն են թափում բոլոր ընդդիմադիրներին, բոլոր սպիտակ-գվարդիական դահճաններին ու միջատներին, տրոցկիստական-բուխարինական ֆաշիստական իժերին, անարգ վնասարարներին, լրտեսներին, դիվերսանտներին, կապիտալիստական հետախուզությունների գործակալներին։

## 5. ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՌՈՒՑՎՈՒՄ Ե ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՑԵՆՏՐԱԼԻԶՄԻ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐՈՎ

Ե՛վ ավելի զարգացնելով մարքսիզմի անսասան հիմունքները, բոլշևիզմի հանճարեղ առաջնորդներ ու ստեղծողներ Լենինը ու Ստալինը մեր կուսակցությունը, նոր տիպի կուսակցությունը կազմակերպեցին դե-



մոկրատական ցենտրալիզմի սկզբունքներով, միասնական կանոնադրությամբ, կուսակցական միասնական կարգապահությամբ, միասնական ղեկավար օրգանի գլխավորությամբ, բոլոր կուսօրգանների ընտրովիությամբ և հաշվետվությամբ։

Դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան-ստալինյան սկզբունքները չեյին կարող լիովին կենսագործվել ռուսական ցարիզմի անողոք ռեակցիայի դաժան պայմաններում։ Ժանդարմների հարձակումները հեղափոխականների վրա և ցարական վոստիկանության կողմից բոլշևիկներին անընդհատ հալածելը պահանջում եյին, վոր խստիվ կոնսպիրատիվություն պահպանվի կուսակցական բոլոր կազմակերպությունների գործունեյության մեջ։

> «Բայց,— ինչպես ասված է Համ Կ(բ)Կ պատմության ստալինյան դասընթացի մեջ,— Լենինը գտնում եր, վոր մեր կուսակցության կյանքում այդ ժամանակավոր յերևույթը կվերանա ցարիզմի վերացման առաջին իսկ որերից, յերբ կուսակցությունը բացահայտ, լեգալ կդառնա և կուսակցական

կազմակերպությունները կկառուցվեն դեմոկրատական ընտրությունների հիմունքներով, դեմոկրատական ցենտրալիզմի հիմունքներով»*)

Միայն ցարիզմի վերացումից և կապիտալիզմի տապալումից հետո, երբ անհրաժեշտ պայմաններ երևան եկան, կուսակցությունն սկսեց կյանքում լրիվին կիրառել դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքները, որոնք պահանջում են կուսակցական բոլոր օրգանների ընտրովիություն և հաշվետվություն, միասնական ղեկավարություն, կուսակցական կարգապահության խստիվ պահպանում:

Մեր կուսակցությունը իր զարգացման բոլոր շրջաններում կառուցվել է ցենտրալիզմի սկզբունքներով: Բոլշևիկյան կուսակցության գոյության այդ կարևորագույն պայմանի մասին ՀամԿ(բ)Կ պատմության դասընթացի մեջ ասված է,—

«Կուսակցությունը՝ կանոնավոր կեր-

*) («ՀամԿ(բ)Կ պատմություն», էջ 69—70, նույնը շքեղ հրատ. հայեր. էջ 67. պետքաղհրատ. 1938 թ. Երևան):



պով գործելու և մասսաներին պլանաչափ ղեկավարելու համար՝ պետք է կազմակերպված լինի ցենտրալիզմի հիմունքներով, միասնական կանոնադրությամբ, միասնական կուսակցական դիսցիպլինայով, իրեն գլուխ ունենալով միասնական ղեկավար մի օրգան՝ ի դեմս կուսակցության համագումարի, իսկ համագումարների միջև ընկած ժամանակամիջոցներում՝ ի դեմս կուսակցության Կենտկոմի, փոքրամասնության ենթարկմամբ մեծամասնությանը, առանձին կազմակերպությունների ենթարկմամբ կենտրոնին, ստորին կազմակերպությունների ենթարկմամբ բարձրագույններին: Առանց այդ պայմանների բանվոր դասակարգի կուսակցությունը չի կարող իսկական կուսակցություն լինել, չի կարող կատարել դասակարգը ղեկավարելու իր խնդիրները»*):

*) («ՀամԿ(բ)Կ պատմություն», էջ 69. նույնը հայ. շքեղ. հրատ. էջ 67. պետքաղհրատ. 1938 թ. Երևան):

Ցենտրալիզմի գլխավոր իդեան ամուր իշխանություն և կարգապահություն ստեղծելու մեջ է։ Իր «Մի քայլ առաջ, յերկու քայլ հետ» գրքում Լենինը գրել է,—

«Առաջ մեր կուսակցությունը ձևականորեն կազմակերպված ամբողջություն չէր, այլ սոսկ մասնավոր խմբերի գումար, ուստի և այլ հարաբերություններ այդ խմբերի միջև, բացի գաղափարական ներգործությունից, չէր էլ կարող լինել։ Այժմ մենք դարձանք կազմակերպված կուսակցություն, իսկ հենց այս էլ նշանակում է իշխանության ստեղծում, գաղափարների հեղինակության վերածումն իշխանության հեղինակության, կուսակցական ստորին ինստանցիաների յենթարկումը բարձրագույն ինստանցիաներին»*)։

Լենինյան այս դրույթների դեմ եյին

*) (Վ. Ի. ԼԵՆԻՆ, «Մի քայլ առաջ, յերկու քայլ հետ», Երկ. ժող. հ. VI, էջ 291 և «Համկ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց», քաղ. հրատ. էջ 67)։



դուրս գալիս մենշևիկներն ու տրոցկիստները, վորով քայքայում և կազմալուծություն եյին մտցնում կուսակցական շարքերի մեջ։

ԼԵՆԻՆԸ իր գրքում ամբողջ ուժով հարձակվում եր մենշևիկների ու տրոցկիստների վրա, վորոնք տարածում եյին ամբողջությամբ սուտ ու կեղծ այն պնդումը, թե իբր ծրագրի ընդունումն ավելի կոմանդակի ցենտրալիզացիային, քան կուսակցության կանոնադրության ընդունումը։ Այդպիսի «հայացքները» բուրժուական-ինտելիգենտական ստորություն համարելով, Լենինը գրում եր,—

«Ծրագրի հարցերի և տակտիկայի հարցերի մեջ յերևան յեկող միաձայնությունը կուսակցական միավորման, կուսակցական աշխատանքի կենտրոնացման անհրաժեշտ պայմանն է, բայց դեռ բոլորը չէ (տեր աստված իմ, ստիպված ենք ի՞նչպիսի այբուբենն վորոճալ ներկա ժամանակներս, յերբ բոլոր հասկացողությունները շփոթվել են!)։ Այս վերջինի համար անհրաժեշտ է նաև կազմակերպության միաձա—

 

կանություն, վորն անյերևակայելի յե ընտանեկան խմբակի շրջանակից փոքրի չափ դուրս յեկած կուսակցության մեջ առանց ձևավորված կանոնադրության, առանց փոքրամասնության յենթարկվելը մեծամասնության, առանց մասի յենթարկվելը ամբողջին»*)

Լենինը մերկացրեց և կծու կերպով ծաղրեց մենշևիկների պոչականության փիլիսոփայությունը, նրանց կազմակերպական նիհիլիզմը և աղայական անարխիզմը, վորոնք չեյին հանդուրժում կուսակցության իշխանությունը նրանց վրա և կուսակցական կարգապահությունը։

Կուսակցությունը ցենտրալիզմի սկզբունքներով կառուցելու իդեան, վոր շարադրված է լենինյան «Մի քայլ առաջ, յերկու քայլ հետ» գրքում, հետագայում դարձավ բոլշևիզմի կարևորագույն կազմակերպական հիմունքներից մեկը։ Այդ բազայի վրա ստեղծված մեր լենինյան-ստալինյան կուսակցությունը դարձավ անխորտակելի ուժ,

*) (Վ. Ի. Լենին, հայերեն, վեցհատորյակ, I հ. եջ՝ 794)։



վորի հետ չի կարող համեմատվել աշխարհում և վո՛չ մի կուսակցություն։

Առանց բոլշևիկյան դեմոկրատական ցենտրալիզմի, առանց միասնական կուսակցական ղեկավարության, ինչպես սովորեցնում են Լենինն ու Ստալինը, հնարավոր չէ կուսակցության իրական միասնականության հաստատել, ապահովել նրա մարտունակության իրական աճը։ Դեմոկրատական ցենտրալիզմը, կոմունիստների բարձր հեղափոխական ակտիվությունը, կարգապահությունը և գաղափարական-քաղաքական զինվածությունը հանդիսանում են մեր կուսակցության հետագա հաջողությունների յերաշխիքը՝ ամբողջ յերկրագնդի վրա սոցիալիզմի վերջնական հաղթանակի համար նրա մղած պայքարում։

## 6. ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՅԵՐԿԱԹՅԱ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ

Կուսակցության վեցերորդ կազմակերպական հիմունքը կուսակցության շարքերի միասնականության պահպանումը, միասնական պրոլետարական կարգապահության

անցկացումն է, որը հավասարապես պարտադիր է կուսակցության բոլոր անդամների համար, առանց որևէ բացառության, «ինչպես լիդերների, այնպես էլ շարքայինների համար»: Դրա համար էլ, ինչպես ասված է ՀամԿ(բ)Կ պատմության մեջ, մեր կուսակցության մեջ «չպետք է լինի բաժանում» «ընտրյալների», որոնց համար դիսցիպլինան պարտադիր չէ, և «ոչ-ընտրյալների», որոնք պարտավոր են ենթարկվել դիսցիպլինային: Առանց այդ պայմանի չեն կարող պահպանվել կուսակցության ամբողջականությունը և նրա շարքերի միասնականությունը»*):

Լենինյան-ստալինյան այս դրույթը բոլշևիզմի կազմակերպական հիմունքներից մեկն է:

«Մի քայլ առաջ, երկու քայլ հետ» գրքում Լենինը մերկացրեց և ջախջախեց մենշևիկների և տրոցկիստների կազմակերպական օպորտունիզմի դասակարգային թշնամական էությունը, որոնք վայնասուն էին բարձրացրել կուսակցության մեջ «պաշարողական դրության» մասին և հան-

*) («ՀամԿ(բ)Կ պատմություն», էջ 70—71).



դես էին գալիս կուսակցական կարգապահության, կուսակցական լենինյան կազմակերպական կանոնադրության դեմ: Լենինը ապացուցեց պրոլետարական կուսակցական կարգապահությունից բուրժուական-ինտելիգենտական վախի լիակատար անհեթեթությունը և անիմաստությունը, կարգապահություն, որն այնքան անհրաժեշտ է պրոլետարիատի իրոք առաջավոր, համախմբված կուսակցության համար:

Լենինն ապացուցեց, որ կարգապահությունից՝ մենշևիկների և տրոցկիստների յուրահատուկ վախը արդյունք է նրանց նեխված օպորտունիզմի և սոչականության:

Բացահայտելով մենշևիզմի օպորտունիստական էությունը, Լենինը գրում էր,—

«Համագումարի կողմից նշանակված խմբագրության դեմ բանական փաստարկների ամենալիակատար բացակայությունը Մարտովի և ընկ. մոտ՝ ամենից լավ լուսաբանվում է իրենց իսկ խոսքով— «մենք ճորտեր չե՛նք»... Իրեն մասսայական կազմակերպությունից և մասսայական դիսցիպլինայից

վեր կանգնած «ընտրյալ հոգիների» շարքը դասող բուրժուական ինտելիգենտի հոգեբանությունն այստեղ զարմանալի վորոշակիությամբ և դրսևորվում... ինտելիգենտական ինդիվիդուալիզմին... ամեն մի պրոլետարական կազմակերպություն և դիսցիպլինա թվում են ճորտատիրական իրավունք»*)

Այսպես եյին իրենց իսկական կերպարանքով մենշևիկներն ու տրոցկիստները, վորոնք ամբողջությամբ տոգորված եյին բուրժուական ինդիվիդուալիզմով և խորշում եյին կուսակցական կարգապահությունից: Միանգամայն այլ բան եյին բոլշևիկները, վորոնք Լենինի և Ստալինի ղեկավարությամբ պաշտպանում եյին կուսակցական ամուր, յերկաթյա կարգապահության անհրաժեշտությունը, առանց վորի անհնար է կուսակցական շարքերի միասնականությունն ու համախմբվածությունը:

*) (Վ. Ի. Լենին, «Մի քայլ առաջ, յերկու քայլ հետ», Երկ. ժող. հ. VI, եջ 282 և «ՀամԿ(բ)Կ պատմություն համառոտ դասընթաց» շքեղ հրատ. եջ՝ 68):



Ծաղրելով մենշևիկյան– տրոցկիստական ոպորտունիստական վախը կարգապահությունից ու կազմակերպությունից, Լենինը գրում եր.—

«Լայն խալաթին և ընտանեկան-խմբակային օբլոմովականության հողաթափներին սովորած մարդկանց համար ձևական կանոնադրությունը թվում է ե՛ անձուկ, ե՛ նեղ, ե՛ ծանր, ե՛ստորացուցիչ, ե՛ բյուրոկրատական, ե՛ ճորտատիրական, և նեղի՛չ գաղափարական պայքարի ազատ «պրոցեսի» համար: Ազնվական անարխիզմը չի ըմբռնում, վոր ձևական կանոնադրությունն անհրաժեշտ է հենց խմբակային նեղ կապերը կուսակցական լայն կապերով փոխարինելու համար»*)

Լիովին ջախջախելով մենշևիկների և տրոցկիստների մանր բուրժուական թափթփվածությունն ու ոպորտունիզմը վորոնց համար դեռևս այն ժամանակ կուսակցության կանոնադրությունը թվում եր

*) (Վեցհատորյակ, I հ. եջ՝ 300):

«և՛ անձուկ, և՛ նեղ, և՛ ծանր», ԼԵՆԻՆԸ համառ կերպով պահանջում էր կուսակցական յերկաթյա կարգապահություն հաստատել, վորն այնքան անհրաժեշտ է հեղափոխական պրոլետարիատի մարքսիստական կուսակցության մոնոլիտ միասնականության համար։ Կուսակցական խիստ կարգապահությունը հավասարապես պարտադիր է կուսակցության բոլոր անդամների համար,— այսպես էր լենինյան կազմակերպական գլխավոր դրույթներից մեկը, վորոնք հետագայում դարձան բոլշևիզմի կազմակերպական հիմունքները։

Տալով մենշևիկների ու տրոցկիստների հետ ունեցած տարաձայնությունների սպառիչ վերլուծությունը, ԼԵՆԻՆԸ իր գրքում նրանց գիծը բնորոշեց վորպես «օպորտունիզմ կազմակերպական հարցերում» և բացահայտեց ժամանակակից օպորտունիզմի բնորոշ գիծը։

Անխոնջ կերպով պայքարելով օպորտունիզմի ամեն մի արտահայտության դեմ՝ կազմակերպական հարցերում, ԼԵՆԻՆԸ գտնում էր, վոր գաղափարական միասնությունն անհրաժեշտ է ամրապնդել պրոլե-



տարիատի «կազմակերպության նյութական միասնականությամբ», վորը հանդիսանում է պրոլետարական հեղափոխության հաղթանակի ամենաէական պայմանը։ Հենց դրա համար էլ ԼԵՆԻՆԸ առանձնապես ընդգծում էր կուսակցական կազմակերպության հսկայական նշանակությունը։

«Պրոլետարիատը,— գրում էր ԼԵՆԻՆԸ,— այլ զենք չունի իշխանության համար մղվող պայքարում, բացի կազմակերպությունից։ Բուրժուական աշխարհում տիրող անարխիստական մրցության գերիշխանությամբ անջատված, կապիտալի համար կատարվող հարկադրական աշխատանքից ճզմված, մշտապես լիակատար թշվառության, վայրենացման և այլասերման «հատակը» նետվող պրոլետարիատը կարող է դառնալ և անխուսափելիորեն կդառնա անպարտելի ուժ միայն շնորհիվ այն բանի, վոր մարքսիզմի սկզբունքներով նրա գաղափարային միավորումն ամրապնդվում է այն կազմակերպության նյութական միասնականությամբ, վոր միլիոնավոր աշխատավորներ միաց-

նում, բանվոր դասակարգի բանակն է ստեղծում։ Այդ բանակին չի դիմանա վոչ ռուսական ինքնակալության զառամած իշխանությունը վոչ միջազգային կապիտալի զառամող իշխանությունը»*)։

Այս մարգարեական, իրականացած խոսքերով է ԼԵՆԻՆԸ ավարտում իր անմահ գիրքը, վորը վորպես անգնահատելի ավանդ մտել է մարքսիզմ-լենինիզմի գանձարանը։

***

Սրանք են այն կազմակերպական սկզբունքներն ու հիմունքները, վոր Լենինը շարադրել ու զարգացրել է իր նշանավոր «Մի քայլ առաջ, յերկու քայլ հետ» գրքում։ Ահա թե ինչու այդ գիրքը մեծագույն նշանակություն ունի մեր կուսակցության և ամբողջ միջազգային կոմունիստական շարժման պատմության մեջ։

«Այդ գրքի նշանակությունը,— ինչ-

*) (Վ. Ի. Լենին, «Մի քայլ առաջ, յերկու քայլ հետ», Երկ. ժող. հ. VI, եջ 328 և «ՀամԿ(բ)Կ պատմություն», հայ., շքեղ. հրատարակություն եջ 698)։



պես ասված է ՀամԿ(բ)Կ պատմության դասագրքի մեջ,— նախ և առաջ այն է, վոր նա պաշտպանեց կուսակցականությունը խմբակայնության դեմ և կուսակցությունը՝ կազմալուծիչների դեմ, ջախջախեց մենշևիկյան օպորտունիզմը կազմակերպական հարցերում և դրեց բոլշևիկյան կուսակցության կազմակերպական հիմքերը։

Բայց դրանով չի սպառվում նրա նշանակությունը։ Նրա պատմական նշանակությունն այն է, վոր նրանում Լենինը մարքսիզմի պատմության մեջ առաջինը մշակեց կուսակցության, վորպես պրոլետարիատի ղեկավար կազմակերպության, վորպես պրոլետարիատի ձեռքին հիմնական զենքի, ուսմունքը, առանց վորի հնարավոր չէ հաղթել պրոլետարական դիկտատուրայի համար մղվող պայքարում»*)։

Լենինյան այդ գրքում զարգացված կազմակերպական դրույթներն ընդունվեցին,

*) («ՀամԿ(բ)Կ պատմություն», եջ 72։ Նույնը շքեղ հրատարակության եջ 70)։

հաստատվեցին բոլշևիկյան կուսակցության III համագումարի կողմից (1905 թվին) և դարձան բոլշևիկյան մեծ կուսակցության կառուցման ու աշխատանքի կազմակերպական սկզբունքները։

Լենինը և Ստալինն առաջինն ստեղծեցին նոր տիպի կուսակցության մասին լրիվին մշակված ուսմունքը։ Ընկեր Ստալինը իր «Թեթևակի կերպով կուսակցական տարաձայնությունների մասին» հիանալի գրքում դեռևս 1905 թվի սկզբին և մի շարք փայլուն հոդվածներում, ինչպես նաև իր ամբողջ հեղափոխական յեռուն գործունեության մեջ պաշտպանել և անշեղորեն կյանքում կիրառել է նոր տիպի կուսակցության շինարարության Լենինյան պլանը։ Ընկեր Ստալինը, իր «Լենինիզմի հիմունքների մասին», «Լենինիզմի հարցերի շուրջը» նշանավոր աշխատություններում է՛լ ավելի յե զարգացել կուսակցության մասին ուսմունքը՝ հաղթանակած սոցիալիզմի յերկրի նոր պայմաններում։

Լենինի– Ստալինի ուսմունքը նոր տիպի կուսակցության մասին ամբողջությամբ հաղթանակեց։ Նա իր արտահայտությունը



գտավ ՀամԿ(բ)Կ կանոնադրության մեջ, վորը հանդիսանում է կուսակցական կյանքի անխախտելի հիմքը։ Կուսակցության կանոնադրությունը, ինչպես ասում է ընկեր Լ. Մ. Կագանովիչը, «վորոշում է կուսակցության պրակտիկ գործունեության յեղանակները, կուսակցության կառուցման կազմակերպական ձևերը և նրա ներքին կյանքի կանոնները» (Լ. Կագանովիչ. «Ինչպես է կառուցված ՎԿ(բ)Կ-ն», եջ 11, 1929 թ.)։

Լենինը և Ստալինը ստեղծեցին, կոփեցին և իրագործեցին բոլշևիկյան մարտական կուսակցության պրոլետարիատի հզոր զենքի — կառուցման մեծ պլանը։ Այդ կուսակցությունը հանդիսանում է դասակարգային մարտերի կրակում փորձված ու կոփված հերոսական ավանգարդը բոլոր աշխատավորների, վորոնք նրա պանծալի առաջնորդությամբ, Մարքսի— Էնգելսի— Լենինի— Ստալինի դրոշի ներքո, հաստատ ու վստահ քայլում են առաջ, դեպի կոմունիզմի լիակատար հաղթանակը մեր յերկրում և ամբողջ աշխարհում։

(«Պարտիյնոյե Ստրոիտելստվո» № 1 1939 թ.)

# ԼԵՆԻՆՆ ՈՒ ՍՏԱԼԻՆՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՈՒ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԴԻՍՑԻՊԼԻՆԱՅԻ ՄԱՍԻՆ

## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՀՈԴՎԱԾՆԵՐԻՑ ՈՒ ՃԱՌԵՐԻՑ

### ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆ ԱՄԵՆԱԿԱՐԵՎՈՐԸ, ԱՄԵՆԱԳԼԽԱՎՈՐՆ Է ՆՈՐ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՀԱՄԱՐ

«Աշխատանքի արտադրողականությունը, այդ, վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակակարգի հաղթանակի համար: Կապիտալիզմն ստեղ-



ծեց ճորտատիրության օրով չտեսնված աշխատանքի արտադրողականություն: Կապիտալիզմը կարող է վերջնականապես պարտվել և կպարտվի վերջնականապես նրանով, վոր սոցիալիզմն ստեղծում է աշխատանքի նոր, շատ ավելի բարձր արտադրողականություն:...

Կոմունիզմը կամավոր, գիտակից, միավորված, առաջավոր տեխնիկա ոգտագործող բանվորների աշխատանքի բարձրագույն արտադրողականությունն է կապիտալիստականի համեմատությամբ:

Կոմունիզմն սկսվում է այնտեղ, վորտեղ յերևան է գալիս ՇԱՐՔԱՅԻՆ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ անձնազոհ, ծանր աշխատանքը հաղթահարող հոգսը՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, պահպանելու ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՓՈՒԹ ՀԱՑԸ, ԱԾՈՒԽԸ, ՅԵՐԿԱԹԸ և այլ մթերքները, վորոնք հասնում են վո՛չ թե անձնապես աշխատողներին և վոչ էլ նրանց «մերձավորներին», այլ «հեռավորներին», այսինքն ամբողջ հասարակությանը, տասնյակ և հարյուր միլիոնավոր մարդկանց, վորոնք միացած են սկզբում մի սոցիալիստական պե-

տության, հետո խորհրդային հանրապետությունների Միության մեջ1):

«Պրոլետարական աշխատանքային դիսցիպլինան հարկավոր է հասցնել ամենաբարձր աստիճանի լարվածության, և այն ժամանակ մենք անհաղթ կլինենք»2):

«Ով այժմ նահանջում է կարգապահությունից, նա թշնամիներին ներս է թողնում շարքերը»3):

## ԱՇԽԱՏԱՆՔ ԱՄԲՈՂՋ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

«Ուրիշների համար աշխատելու, շահագործողների համար հարկադրաբար աշխա-

1) «Մեծ նախաձեռնություն» Երկ. հ. XXIV, էջ 342:

2) «Ճառ արտասանած ապակու և ճենապակու արտադրության բանվորների Համամիութենական համագումարում 1920 թ. ապրիլ 29-ին»: Երկ. հ. XXV, էջ 254:

3) «Նոր տնտեսական քաղաքականությունը և քաղլուսվարների խնդիրները», զեկուցում քաղլուսվարների համառուսական II համագումարում 1921 թվի հոկտեմբերի 17-ին,

Երկ. հ. XXVII, էջ 45:



տելու հարյուրամյակներից հետո առաջին անգամ հնարավորություն է ստեղծվում ԻՐ ՀԱՄԱՐ ԱՇԽԱՏԵԼ, և ըստ վորում, աշխատել հենվելով նորագույն տեխնիկայի և կուլտուրայի բոլոր նվաճումների վըրա»4):

## ՈՎ ՉԻ ԱՇԽԱՏՈՒՄ, ՆԱ ՉԻ ՈՒՏՈՒՄ

«Ով չի աշխատում, նա չի ուտում» ահա սոցիալիզմի ԳՈՐԾՆԱԿԱՆ պատվիրանը: Ահա թե ինչը պետք է ԳՈՐԾՆԱԿԱՆՈՐԵՆ կարգավորել»5):

## ՏՆՏԵՍԱՎԱՐԻ՛Ր ԽՆԱՅՈՂԱԲԱՐ, ԼՈԴՐՈՒԹՅՈՒՆ ՄԻ՛ ԱՆԻՐ, ՄԻ՛ ԳՈՂԱՑԻՐ, ԽԻՍՏ ԿԱՐԳԱՊԱՀ ՅԵՂԻ՛Ր ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԵՋ

«Դրամի հաշիվը պահի՛ր կանոնավոր կերպով բարեխղճորեն, տնտեսավարի՛ր խնայողաբար, լոդրություն մի անիր, մի՛ գո-

4) «Ինչպես կազմակերպել մրցությունը» Երկ. հ. XXII, էջ 161:

5) «Ինչպես կազմակերպել մրցությունը» Երկ. հ. XXII, էջ 166:

դանս, խիստ կարգապահ յեղիր աշխատանքի մեջ, հենց այս լոզունգները, որ իրավացի կերպով ծաղրում եյին հեղափոխական պրոլետարները այն ժամանակ, յերբ բուրժուազիան նման ճառերով քողարկում եր իր՝ որպես շահագործողների դասակարգի տիրապետությունը, այժմ, բուրժուազիայի տապալելուց հետո դառնում են մոմենտի հերթական և գլխավոր լոզունգները»6):

## ՍՈՑԻԱԼԻԶՄԸ—ԱՅԴ ՀԱՇՎԱՌՈՒՄ Ե

«...Համատարած, ընդհանրական, ունիվերսալ հաշվառում և վերահսկողություն,—հաշվառում և վերահսկողություն աշխատանքի քանակի և արդյունքների բաշխման նկատմամբ,— ահա հենց այս է սոցիալիստական վերակառուցման եյությունը, յերբ պրոլետարիատի քաղաքական տիրապետությունն ստեղծված և ապահոված է:

Հաշվառքը և վերստուգումը, որ սո-

6) «Խորհրդային իշխանության հերթական խնդիրները» Երկ. հ. XXII, էջ 443:



ցիալիզմին անցնելու համար անհրաժեշտ են, կարող են միայն մասսայական լինել: Միայն բանվորների և գյուղացիների ՄԱՍՍԱՅԻ կամավոր և բարեխիղճ, հեղափոխական բուռն վոգեվորությամբ կատարվող աշխատակցությունը հաշվառքի և ՀԱՐՈՒՍՏՆԵՐԻ, ԺՈՒԼԻԿՆԵՐԻ, ՊՈՐՏԱԲՈՒԾՆԵՐԻ, ԽՈՒԼԻԳԱՆՆԵՐԻ վերստուգման գործին կարող է հաղթել անիծյալ կապիտալիստական հասարակության այս մնացորդներին, մարդկության այս թափթփուկներին, այս անհույս կերպով փթած և անկենդան անդամներին, այս վարակը, ժանտախտը, խոցը, որ սոցիալիզմին ժառանգություն է մնացել կապիտալիզմից»7):

## ԲՈԼՈՐ ՈԱՅՄԱՆՆԵՐԸ ԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ

«Աշխատանքի արտադրողականության վերելքը նախ և առաջ պահանջում է ապա-

7) «Ինչպես կազմակերպել մրցությունը» Երկ. հ. XXII, էջ 168:

ռովել խոշոր ինդուստրիայի նյութական հիմքերը— զարգացնել վառելանյութի, յերկաթի, մեքենաշինության, քիմիական արդյունաբերության արտադրությունը։ Ռուսաստանի խորհրդային հանրապետությունը ձեռնտու պայմանների մեջ է գտնվում այնքան, վոր նա— ունի… հանքերի վիթխարի պաշարներ (Ուրալում), վառելանյութի՝ Արևմտյան Սիբիրում (քարածուխ), Կովկասում և հարավ-արևելքում (նավթ), կենտրոնում (տորֆ), անտառի, ջրային ուժերի, քիմիական արդյունաբերության հումքի (Կարաբուղազ) վիթխարի հարստություններ և այլն։ Այս բնական հարստությունների մշակումը նորագույն տեխնիկայի յեղանակներով՝ հիմք կստեղծի արտադրողական ուժերի չտեսնված պրոգրեսի համար։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման մյուս պայմանը նախ և առաջ բնակչության մասսայի կրթական և կուլտուրական վերելքն է։ Այդ վերելքն այժմ տեղի յե ունենում վիթխարի արագությամբ, վորը չեն տեսնում բուրժուական ռուտինայով կուրացած մարդիկ, այն



մարդիկ, վորոնք ընդունակ են չըմբռնելու, թե ժողովրդական «ստորին խավերում» այժմ, խորհրդային կազմակերպության շնորհիվ վորքան բուռն ձգտում կա դեպի լույս և վորքան նախաձեռնություն է ծավալվում։ Յերկրորդ՝ տնտեսական վերելքի պայման է նաև աշխատավորության կարգապահության, աշխատանքի ունակության, հաջողակության, աշխատանքի ինտենսիվության, նրա լավագույն կազմակերպման բարձրացումը»[8])։

## ԼՐԻՎ ՉԱՓՈՎ ԻՐԱԳՈՐԾԵԼ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ԴԻԿՏԱՏՈՒՐԱՆ ԲՈԼՈՐ ԲՆԱԳԱՎԱՌՆԵՐՈՒՄ

«Մեր առաջ առաջին հերթին կանգնած է հետևյալ խնդիրը— լրիվ չափով իրագործել պրոլետարիատի դիկտատուրան բոլոր բնագավառներում. աշխատանքային դիսցիպլինայի կազմակերպման մեջ, արտադրության մեջ, արտադրության արդյունքների բաշխման մեջ։ Այն թշնամին, վորի

8) «Խորհրդային իշխանության հերթական խնդիրները»։ Երկ. հ. XXII, էջ 452—454։

մասին յես ասացի, այդ այն մանր սեփականատիրոջ տարերքն է, վոր ապրում է մի մտքով «ինչ վոր հնարավոր եր գշլեցի, իսկ այնուհետև ինչ ուզում է թող լինի» —այս թշնամին ավելի ուժեղ է, քան բոլոր Կորնիլովները, Դուտովները ու Կալեդինները միասին վերցրած»9)։

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ՅԵՐԿԱԹՅԱ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

«Պետք է ամրապնդենք այն, ինչ մենք ինքներս ենք նվաճել, ինչ մենք դեկրետագրել, որինականացրել, քննարկել, նշել ենք, պետք է ամրապնդենք՝ ԱՌՈՐՅԱ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ հաստատուն ձևերով: Այս ամենադժվար, բայց և ամենաշնորհակալ խնդիրն է, վորովհետև միայն նրա լուծումը մեզ սոցիալիստական կարգեր կտա: Պետք է սովորել աշխատա-

9) «Ճառ արտասանած բանվ․, գյուղաց․ և կարմիր–բանակ․ դեպուտ․ Մոսկվայի խորհրդում, 1918 թ․ ապրիլի 23-ին»։ Երկ․ հ․ XXII, եջ 482։



վոր մասսաների բուռն, գարնանային հորդահոսություն ունեցող, բոլոր ափերից դուրս յեկող միտինգային դեմոկրատիզմը միացնել ՅԵՐԿԱԹՅԱ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ հետ՝ աշխատանքի ժամանակ, մի անձի, խորհրդային ղեկավարի կամքին ԱՆԱՌԱՐԿԵԼԻՈՐԵՆ ՅԵՆԹԱՐԿՎԵԼՈՒ հետ՝ աշխատանքի ժամանակ»10)։

## ՊՐՈՖԵՍԻՈՆԱԼ ՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՈՒ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՈՐԳԱՆՆԵՐ ԵՆ

«...Պրոֆեսիոնալ միությունները պետք է և լ ավելի վերածվեն անխտիր ամբողջ աշխատավոր մասսայի սոցիալիստական դաստիարակության որգանների, այնպես վոր կառավարմանը մասնակցելու գործնական փորձն ընդգրկի, բանվորական ավան-

10) «Խորհրդային իշխանության հերթական խնդիրները»։ Երկ․ հ․ XXII, եջ 464։

գործի վերահսկողությամբ, բանվորների ավելի հետամնաց խավերը»11)։

## ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ՇԱՀԵՐԸ ՊԱՇՏՊԱՆԵԼ ԳՐՓՈՂՆԵՐԻՑ, ՁՐԻԱԿԵՐՆԵՑԻՑ

«...Պահպանել բանվոր ԴԱՍԱԿԱՐԳԻ շահերը բանվորների այն խմբակներից, խըմբերից, խավերից, վորոնք համառորեն պահպանում են կապիտալիզմի տրադիցիաները (սովորությունները) և շարունակում են նայել խորհրդային պետության վրա առաջվա պես. տալ «նրան» ավելի քիչ, ավելի վատ աշխատանք,— պոկել «նրանից» ավելի շատ դրամ»12)։

«Թող յուրաքանչյուր բանվոր տոգորվի այն գիտակցությամբ, վոր ինքն է յերկրի կառավարողը... հարկավոր է, վոր Ռուսաստանը դառնա աշխատանքային մի ահագին բանակ, վոր համակված լինի ամեն

11) «Ռ.Կ(բ)Կ ծրագրի Նախագիծը», Երկ. հ. XXIV, եջ՝ 101–102։

12) «Մեր թերթերի բնույթի մասին» Երկ. հ. XXIII, եջ՝ 213։



ինչ համար ընդհանուր գործի՝— աշխատավորների ազատագրության— գոհաբերելու հեղափոխական գիտակցությամբ»13)։

## Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ՃԱՌԵՐԻՑ

«Իրոք սոցիալիզմը կարող է հաղթել միմիայն աշխատանքի ավելի բարձր արտադրողականության բազայի վրա, ավելի բարձր, քան կապիտալիզմի պայմաններում, արտադրանքի և սպառման ամեն տեսակ առարկաների առատության բազայի վրա, հասարակության բոլոր անդամների ունեվոր և կուլտուրական կյանքի բազայի վրա։ Բայց վորպեսզի սոցիալիզմը կարողանա հասնել իր այդ նպատակին և ամենից ավելի ունեվոր դարձնել մեր խորհրդային հասարակությանը, անհրաժեշտ է ունենալ յերկրում աշխատանքի այնպիսի արտադրո-

13) «Ճառ արտասանած տեքստիլ արդյունաբերության բանվորների III համառուսական համագումարում 1920 թ. ապրիլի 19-ին»։ Երկ. հ. XXV, եջ՝ 157։

դականություն, վորը գերազանցնում է կապիտալիստական առաջավոր յերկրների աշխատանքի արտադրողականությունից: Առանց դրան մտածել անգամ ավելորդ է արտադրանքների և սպառման ամեն տեսակ առարկաների առատության մասին: Ստախանովյան շարժման նշանակությունն այն է, վոր նա մի այնպիսի շարժում է, վորը խորտակում է տեխնիկական հին նորմաները վորպես անբավարար նորմաներ, մի շարք դեպքերում գերազանցում է կապիտալիստական առաջավոր յերկրների աշխատանքի արտադրողականությունից և այդպիսով գործնական հնարավորություն է ստեղծում մեր յերկրում սոցիալիզմն էլ ավելի ամրացնելու, հնարավորություն է ստեղծում մեր յերկիրն ամենաունևոր յերկիրը դարձնելու համար»*)։

*) «Ճառ, արտասանած ստախանովականների համամիութենական առաջին խորհրդակցությունում» եջ 7—8 Հայկուսհրատ 1935 թ.,



## ԱՇԽԱՏԱՆՔԸ ԽՍՀՄ-ՈՒՄ ՊԱՏՎԻ, ՓԱՌՔԻ, ԱՐԻՈՒԹՅԱՆ ՈՒ ՀԵՐՈՍՈՒԹՅԱՆ ԳՈՐԾ Է

«Մրցության մեջ ամենանշանավորն այն է, վոր նա աշխատանքի մասին մարդկանց ունեցած հայացքների մեջ արմատական հեղաշրջում է առաջացնում, վորովհետև նա աշխատանքն ամոթալի ու ծանր լծից, վորպիսին նա համարվում էր առաջներում՝ դարձնում է ՊԱՏՎԻ գործ, ՓԱՌՔԻ գործ, ԱՐԻՈՒԹՅԱՆ ու ՀԵՐՈՍՈՒԹՅԱՆ գործ: Կապիտալիստական յերկրներում չըկա և չի կարող լինել նման վոչ մի բան: Այնտեղ, նրանցում, կապիտալիստների մոտ, ամենաբաղձալի գործը, վորը հասարակական հավանության է արժանանում, ռենտա ունենալը, տոկոսներով ապրելը, աշխատանքից ազատ լինելն է, աշխատանքից, վորն արհամարհելի զբաղմունք է համարվում: Մեզանում, ԽՍՀՄ-ում, ընդհակառակը, ամենաբաղձալի գործը, վորը հասարակական հավանության է արժանանում, դառնում է աշխատանքի հերոս լինե-

լու հնարավորությունը, հարվածայնության ներքո լինելու հնարավորությունը, մի ներոս, վորը միլիոնավոր աշխատավորության մեջ շրջապատված է մեծարանքի լուսապսակով»*)։

## ՍՈՑԻԱԼԻԶՄՆ ՈՒ ԱՇԽԱՏԱՆՔՆ ԱՆԲԱԺԱՆԵԼԻ ՅԵՆ ՄԻՄՅԱՆՑԻՑ

«Ցերբեմն ասում են. թե վոր սոցիալիզմ է, ել ի՞նչ կարիք կա աշխատելու։ Աշխատում եյինք առաջ, աշխատում ենք այժմ, մի՞թե ժամանակը չի աշխատելուց դադարե՞լ։ Այդպիսի խոսքերն արմատապես սխալ են, ընկերներ։ Դա լոդրերի փիլիսոփայությունն է և վոչ թե ազնիվ աշխատողների։ Սոցիալիզմն ամենևին չի ժխտում աշխատանքը։ Ընդհակառակը, սոցիալիզմը՝ կառուցվում է աշխատանքի վրա։ Սոցիալիզմն ու աշխատանքն անբաժանելի յեն միմյանցից։ Մեր մեծ ուսուցիչ

*) «Կենտրոնական կոմիտեյի քաղաքական հաշվետվությունը ՀամԿ(բ)Կ XVI համագումարին»։ «Լենինիզմի հարցերը», եջ 501, Պետհրատ, ՀԿ(բ)ԿԿ կուսհրատ 1937 թ.։



Լենինն ասել է. «ով չի աշխատում, նա չի ուտում»։ Ի՞նչ է նշանակում այդ, ո՞ւմ դեմ են ուղղված Լենինի խոսքերը։ Շահագործողների դեմ, նրանց դեմ, ովքեր իրենք չեն աշխատում, այլ ուրիշներին են հարկադրում աշխատել և հարստանում են ուրիշների հաշվին։ Ե՞լ ում դեմ։ Նրանց դեմ, ովքեր իրենք լոդրություն են անում և ուզում են շահվել ուրիշների հաշվին։ Սոցիալիզմը պահանջում է վո՛չ թե ծուլություն անել, այլ այն, վոր բոլոր մարդիկ աշխատեն ազնվորեն, աշխատեն վո՛չ թե ուրիշների համար, վո՛չ թե հարուստների ու շահագործողների համար, այլ իրենց համա՛ր, հասարակության համար»*)։

«Վերջապես, մեզ հարկավոր է կամպանիա մղել գործարաններում ու փաբրիկաներում գործալքումները վոչնչացնելու հա-

*) «Ճառ. արտաս. Հարվածային կոլտնտեսականների առաջին համագումարում» 1933 թ. փետրվարի 19-ին։ «Լենինիզմի հարցերը», եջ 538։ 10-րդ հրատ. 781–782 և առանձին գրքով, պետհրատ. հրատ. եջ 21–22, Յերևան, 1938 թ.։

մար, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար, մեր ձեռնարկություններում աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու համար: Տասնյակ ու հարյուր հազարավոր աշխատանքային ռուբլի արդյունաբերության համար կորչում են գործալքումների պատճառով: Այս պատճառով հարյուր հազարներ ու միլիոններ են կորչում ի վնաս մեր արդյունաբերության, ի վնաս ինդուստրիայի: Մենք չենք կարող մեր ինդուստրիան առաջ շարժել, մենք չենք կարող աշխատավարձը բարձրացնել, յերբ գործալքումները չդադարեն, յերբ աշխատանքի արտադրողականությունը կանգ առնի մի կետի վրա: Բանվորներին պետք է բացատրել, մանավանդ այն բանվորներին, վորոնք նոր են մտել փաբրիկաները ու գործարանները, պետք է բացատրել, վոր գործալքումները թույլ տալով և աշխատանքի արտադրողականությունն առաջ չշարժելով, նրանք գործում են ի վնաս ընդհանուր գործի, ի վնաս ամբողջ բանվոր դասակարգի, ի վնաս մեր արդյունաբերության: Պայքարել գործալքումների դեմ, պայքարել աշխատանքի



արտադրողականությունը բարձրացնելու համար, յելնելով մեր արդյունաբերության շահերից, ամբողջ բանվոր դասակարգի շահերից— ահա այս է խնդիրը»*)։

---

*) Խորհրդային Միության տնտեսական դրության մասին». Զեկուցում Լենինգրադի կազմակերպության ակտիվին՝ ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի պլենումի աշխատանքի մասին 1926 թ. ապրիլի 13-ին։

# ԻՆՉՈ՞Ի ՀԱՄԱՐ ԵՆ ՄՏՑՎՈՒՄ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԳՐՔՈՒՅԿՆԵՐԸ

1938 թ. դեկտեմբերի 20-ին ԽՍՀ Միության ժողկոմխորհը վորոշեց 1939 թ. հունվարի 15-ից Աշխատանքային գրքույկներ մտցնել պետական ու կոոպերատիվ բոլոր ձեռնարկությունների ու հիմնարկությունների բանվորների ու ծառայողների համար:

Ինչո՞ւ համար են մտցվում Աշխատանքային գրքույկները, վո՞րն է նրանց պետական նշանակությունը:

Աշխատանքային գրքույկներ մտցնելը կոգնի աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու, խիստ տարբերություն դնելու ազնիվ աշխատողների ու լոդրերի միջև: Աշխատանքային գրքույկը կլինի աշխա-



տանքի արտադրողականության հետագա բարձրացման լուրջ միջոցառումներից մեկը:

Սոցիալիստական տնտեսության աշխատողների աշխատանքի բարձր արտադրողականությունը հանդիսանում է մեր բոլոր հաղթանակների ամենակարևոր պայմանը կոմունիզմի ճանապարհին:

Ամեն մի խորհրդային ձեռնարկություն, ամեն մի հիմնարկության աշխատանքի հաջողությունը վորոշում են կադրերը: Մեր յերկրում ամենաթանկարժեք կապիտալ հանդիսանում են մարդիկ-կադրերը: Մարդկանց պետք է ճանաչել: Իսկ դրա համար ամեն մի ձեռնարկության ու հիմնարկության մեջ պետք է լավ դրված լինի բանվորների ու ծառայողների հաշվառումը: Աշխատանքային գրքույկներ մտցնելը հենց հնարավորություն է տալիս այդպիսի հաշվառում ունենալու: Մեր ձեռնարկությունների ու հիմնարկությունների ղեկավարները հնարավորություն կունենան իրենց կադրերը լավ ճանաչելու:

Աշխատանքային գրքույկներ կմտցվեն ձեռնարկություններում ու հիմնարկու-

թյուններում 5 օրից ավելի աշխատող բոլոր բանվորների ու ծառայողների համար, այդ թվում սեզոնային ու ժամանակավոր աշխատողների համար:

Աշխատանքային գրքույկների մեջ մտցըվում են աշխատողի մասին յեղած հիմնական տվյալները՝ տարիքը, պրոֆեսիան, կրթությունը, տեղեկություններ աշխատանքի մասին, մեկ ձեռնարկությունից (հիմնարկությունից) մյուսը փոխադրվելու մասին, այդ փոխադրման պատճառների մասին, ինչպես և տեղեկություններ խրախուսանքների ու պարգևատրումների մասին: Աշխատանքային գրքույքի մեջ, ինչպես հայելու մեջ, կարտացոլվի յուրաքանչյուր աշխատողի դեմքը, նրա անունն ու արտադրական հաջողությունները: Բարեխիղճ աշխատողների աշխատանքային ծառայությունները ստվերի մեջ չեն մնա: Նրանք լավ հայտնի կլինեն խորհրդային պետությանն ու աշխատավորներին: Աշխատանքային գրքույկի մեջ գըրանցված խրախուսանքներն ու պարգևատրումները կհանդիսանան աշխատողի՝



դեպի մեր հայրենիքն ունեցած նվիրվածության լավագույն վկայությունը:

Աշխատանքային գրքույկի մեջ ցույց կտրվեն աշխատանքից ազատելու պատճառները. Առանց աշխատանքային գրքույկը ներկայացնելու աշխատանքի չեն ընդունի: Այս բոլորը կստիպի չվողներին և գործալիքներին մտածել իրենց վարքի մասին և կդրդի ավելի լավ վերաբերվելու դեպի աշխատանքը:

Առաջին անգամը աշխատանքի մտնողները պարտավոր են ձեռնարկության (հիմնարկության) ադմինիստրացիային ներկայացնել տնային վարչության կամ գյուղխորհրդի տեղեկանքն իրենց վերջին զբաղմունքի մասին:

Աշխատանքային գրքույկներ մտցնելը և բանվորների ու ծառայողների հաշվառման մեջ լիակատար կարգ սահմանելը հնարավորություն կտան ավելի լավ պայքարելու մեր ձեռնարկությունների ու հիմնարկությունների մեջ խորթ ու թշնամի տարրե-

թի ներթափանցման դեմ։ Խորհրդային ձեռնարկությունների ու հիմնարկությունների ղեկավարների մոտ կբարդանա իրենց կադրերի, նոր մարդկանց աշխատանքի ընդունելու համար նրանց ունեցած պատասխանատվությունը։

Խորհրդային յերկրի բոլոր գիտակից քաղվորները, բոլոր նրանք, ովքեր հոգ են տանում մեր սոցիալիստական տնտեսության հետագա անման մասին, Աշխատանքային գրքույկներ մտցնելու վերաբերյալ կառավարության վորոշումը դիմավորեցին միահամուռ հավանությամբ։ Աշխատավորները Աշխատանքային գրքույկը գնահատում են վորպես մի փաստաթուղթ, վորով ազնիվ բանվորները ու ծառայողները կպարծենան։

Յուրաքանչյուր ագիտատորի պարտքն է Աշխատանքային գրքույկի պետական և ժողովրդատնտեսական հսկայական նշանակությունը պարզաբանել միլիոնավոր խորհրդային մարդկանց։ Յուրաքանչյուր բանվոր և ծառայող պետք է ձգտի, վորպեսզի նրա Աշխատանքային գրքույկի մեջ գրանցված ամեն ինչ խոսի նրա անման և բարեխիղճ աշխատանքի մասին ի բարօրություն սոցիալիստական հայրենիքի։

ԿՈՄՍՈՄՈՒԼՏԱՑԻՆ

# ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ՅԵՎ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Մարքսիզմ-լենինիզմը կոմունիստական հասարակության զարգացման մեջ մատնանշում է յերկու հիմնական աստիճաններ, այդ հասարակության հասունության յերկու ստադիա: Սոցիալիզմը հանդիսանում է կոմունիզմի առաջին, ցածր աստիճանը (փազը):

Սոցիալիստական նոր հասարակություն կառուցելու հնարավորությունը բացվում է այն ժամանակ, յերբ հաղթանակում է պրոլետարական հեղափոխությունը, տապալվում է բուրժուազիայի ու կալվածատերերի իշխանությունը: Խորհրդային պետությունը— բանվոր դասակարգի դիկտատուրան— տապալված շահագործողների



դեմ մղվող պայքարի գլխավոր գործիքն է, բանվոր դասակարգի ձեռքում աշխատավորների նկատմամբ պետական ղեկավարությունն իրագործելու օրգանն է, կապիտալիստական հասարակությունը սոցիալիստական հասարակության վերափոխելու գործում վճռական լծակն է:

Խորհրդային յերկիրը մեկուսացած մի կղզի չէ: Այդ յերկիրը գոյություն ունի թշնամի կապիտալիստական յերկրների շրջապատման մեջ: Այդ պատճառով սոցիալիստական հասարակության պաշտպանությունը յերկրի պաշտպանունակության ամրացումը կարևորագույն գործ է: Այն՝ իրականացվում է պետության, Կարմիր Բանակի միջոցով:

Հաղթանակած բանվորներն ու գյուղացիները չեյին կարողանա լուծել պրոլետարական հեղափոխության մեծ խնդիրները, յեթե չստեղծեյին խորհրդային հզոր պետություն, քաջարի Կարմիր Բանակ, փառապանծ խորհրդային հետախուզություն:

ԽՍՀՄ-ում հիմնականում արդեն կառուցվել է կոմունիզմի առաջին փազը՝ սոցիալիզմը: Ստեղծվել է նոր, սոցիալի-

տական էկոնոմիկա: Վոչնչացվել է մարդու կողմից մարդուն շահագործելը: Սոցիալիստական սիստեմը հաղթանակել է: Արտադրության միջոցների հանրային սեփականությունը դարձել է մեր կարգերի անխախտելի հիմքը ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում: Ընդմիշտ անհայտացել են ճգնաժամերը, գործազրկությունը, աղքատությունը և քայքայումը: ԽՍՀՄ քաղաքացիները բոլոր պայմաններն ունեն ունևոր ու կուլտուրական կյանքի համար:

Լիկվիդացիայի յեն յենթարկվել շահագործողական բոլոր տարրերը՝ կապիտալիստները, կուլակները, վաճառականներն ու սպեկուլյանտները:

Խորհրդային յերկրի աշխատավորները՝ բանվոր դասակարգը, գյուղացիների դասակարգն ու ինտելիգենցիան նույնպես փոխել են իրենց դեմքը սոցիալիստական շինարարության ընթացքում: Ընկնում, ջնջվում են նրանց միջև յեղած դասակարգային տարբերությունները: Ամրանում է խորհրդային ժողովրդի բարոյական-քաղաքական միասնությունը:

Ստալինյան Սահմանադրությունը հան-



դիսանում է ԽՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի և խորհրդային սոցիալիստական պետության հզորության հետագա ամրապնդման արտահայտությունը:

Ստալինյան Սահմանադրությունը «ամրապնդեց այն համաշխարհային—պատմական փաստերը, վոր ԽՍՀՄ-ն մտել է զարգացման մի նոր շրջան, սոցիալիստական հասարակության կառուցումն ավարտելու և աստիճանաբար կոմունիստական հասարակությանն անցնելու շրջան, վորտեղ հասարակական կյանքի ղեկավար հիմունքը պետք է լինի կոմունիստական սկզբունքը. «Յուրաքանչյուրից՝ ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ նրա պահանջմունքների»*):

Վորո՞նք են ուրեմն կոմունիստական հասարակության բարձրագույն աստիճանի կառուցման ուղիները:

Վորպեսզի իրագործվի անցումը դեպի լիակատար կոմունիզմը, պահանջվում է հետագայում ևս զարգացնել սոցիալիստական ժողովրդական տնտեսությունը,

*) «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց», եջ 465: Պետքաղհրատ, 1938:

այդ տնտեսության զինել առաջավոր տեխնիկայով և արտադրության մեջ լայն կերպով գործադրել՝ էլեկտրականությունը: «Կոմունիզմը—այդ խորհրդային իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի ելեկտրոֆիկացիան»—գրել է Լենինը:

Ելեկտրականության արմատացումը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի մեջ նշանակում է անցում աշխատանքի ավելի կատարյալ մեթոդների ավտոմատիկ դազգյահների օգնությամբ: Բանվորի ֆիզիկական աշխատանքը կփոխարինվի մեքենաների ընթացքին հետևելով ու վերահսկելով, այսինքն ըստ եյության կվերածվի ինժեներա-տեխնիկական աշխատանքի: Աշխատանքի արտադրողականության հետագա աճումը հնարավորություն կտա ավելի ու ավելի կրճատելու բանվորական օրը: Այն ժամանակ աշխատանքը կդառնա ոչ թե պարտականություն, այլ ամեն մի առողջ մարդու բնական պահանջմունք: Կոմունիստական աշխատանքը կամավոր աշխատանք է: Այդ աշխատանքը աճում է ստախանովականների աշխատանքից, սոցիալիստական մրցության հետագա զարգացումից:



Նորագույն մեքենաների ու ագրոտեխնիկայի գործադրումը գյուղատնտեսության ասպարեզում բարձրացնում է գյուղատնտեսական աշխատանքի արտադրողականությունը և փոխում է այդ աշխատանքի բնույթը: Տրակտորիստի, կոմբայնավարի, բարդ կալսիչի մեխանիկի աշխատանքը այդ արդեն առաջվա հողագործի աշխատանքը չէ, այլ ինդուստրիալ տիպի աշխատանք: ՄՏԿ-ների շինարարությունը, կոլտնտեսությունների ու խորհտնտեսությունների զարգացումը սոցիալիստական աշխատանքի ու առաջավոր տեխնիկայի հիման վրա, տրանսպորտի, կապի, խորհրդային առևտրի, կուլտուրական բոլոր տեսակների բուռն աճը գյուղում—քաղաքը մոտեցնում են գյուղին, կվերացնեն նրանց միջև եղած տարբերությունը:

Անցումը դեպի կոմունիզմ հնարավոր չէ առանց լայն ու ընդհանուր կուլտուրական վերելքի: Ելեկտրական մուրճի և բարդ ավտոմատի մոտ աշխատող ժամանակակից բանվորը պետք է իմանա մեխանիկայի, ֆիզիկայի և այլ գիտությունների հիմունքները, եթե նա ուզում է մինչև վերջը տիրապետել այն մեքենաներին, վորոնց

ոգնությամբ նա աշխատում է: Տրակտորիստը, կոմբայնավարը, դաշտավարը և սոցիալիստական հողագործության մյուս աշխատողները պետք է իմանան մեխանիկայի, ֆիզիկայի, քիմիայի, բիոլոգիայի հիմունքները, որպեսզի իրենց աշխատանքը կատարեն գործը իմանալով, բնությունից ու նոր տեխնիկայից վերցնելով այն բոլորը, ինչ նրանք կարող են տալ:

Ստախանովական շարժումը կուլտուրական զարգացման մեջ նոր աստիճան է բաց անում, այդ շարժումն իր մեջ պարունակում է բանվորների ու կոլտնտեսականների կուլտուրական-տեխնիկական այնպիսի վերելքի սկիզբը, որը կջնջի մտավոր աշխատանքի ու ֆիզիկական աշխատանքի միջև յեղած տարբերությունը: Այդ շարժումը տալիս է այնպիսի աշխատանքի արտադրողականության նմուշներ, որն անհրաժեշտ է, որպեսզի ստեղծենք մթերքների ու ապրանքների լիակատար առատություն և ապահովենք ըստ կարիքի բաշխելու կոմունիստական սկզբունքին անցնելը:

Սոցիալիզմից դեպի լիակատար կոմունիզմ անցնելու կարևորագույն պայման-



ներից մեկը Լենինը համարում էր նաև բոլոր քաղաքացիների բարձր քաղաքական գիտակցությունն ու ակտիվությունը. յուրաքանչյուրը պետք է կարողանա կառավարել պետական գործեր, իսկ սոցիալիստական համակեցության կանոնների պահպանումը պետք է սովորություն դառնա: Ստալինյան Սահմանադրությունը ԽՍՀՄ բոլոր քաղաքացիներին բոլոր հնարավորությունները տալիս է հասարակական ու պետական գործերի կառավարմանը ակտիվ կերպով մասնակցելու համար: Խորհրդային իշխանությունը ապահովել է հարյուր հազարավոր ու միլիոնավոր բանվորների ու գյուղացիների աճումն ու առաջ քաշումը զանազան պոստերի պետական ապարատում, հասարակական ու կուլտուրական կազմակերպություններում: Խորհրդային ինտելիգենցիայի շարքերը հետագայում ևս սիստեմատիկորեն աճելու յեն:

Մեր առաջ դեռ ևս մեծ աշխատանք է ծառացած կապիտալիզմի՝ մարդկանց գիտակցության մեջ յեղած մնացորդները հաղթահարելու ասպարեզում: Սոցիալիստական սեփականության նկատմամբ

ցույց տվող մանր բուրժուական վերաբերմունքի արտահայտությունները՝ գողություն, հափշտակություններ, գռփողականություն, աշխատանքային կարգապահության խախտումներ, քիչ աշխատելու և շատ ստանալու ձգտումներ, մանրբուրժուական հավասարարական տրամադրություններ, կրոնական նախապաշարմունքներ, վոչ սոցիալիստական վերաբերմունք դեպի հասարակական պարտքն ու պարտականությունները, կապիտալիզմի մնացուկները կենցաղում—անցյալի այս բոլոր մնացորդներն կարելի յե արմատախիլ անել միայն համառ աշխատանքի միջոցով, մեր յերկրի աշխատավորների սոցիալիստական դաստիարակության միջոցով:

Սոցիալիստական հասարակությունը կոմունիստական հասարակության վերափոխվելու ընթացքում կջնջվեն բանվորների ու գյուղացիների միջև յեղած դասակարգային տարբերությունների մնացորդները, ինչպես և սրանց ու խորհրդային ինտելիգենցիայի միջև յեղած տարբերությունները: Բոլոր բանվորներն ու գյուղացիները կդառնան կրթված ու ինտելիգենտ մարդիկ:



Նրանք բոլորն էլ կդառնան միասնական կոմունիստական հասարակության աշխատողներ:

Այդ կլինի արտադրողական ուժերի բարձր զարգացման հասած մակարդակով, կատարյալ տեխնիկայով ու աշխատանքի բարձր արտադրողականությամբ, գիտության չտեսնված ծաղկումով մի հասարակություն, ազատ, բազմակողմանիորեն զարգացած, կուլտուրայի բոլոր բարիքներով օգտվող մարդկանց հասարակություն:

Կոմունիզմի հոյակապ շենքը ստեղծելու համար անհրաժեշտ է մինչև վերջը օգտագործել բանվոր դասակարգի դիկտատուրայի ամբողջ հզորությունն ու ուժը, սոցիալիստական պետության հզորությունը:

«Մինչև այն ժամանակ, յերբ կգա կոմունիզմի «բարձրագույն» փուլը, սոցիալիստները պահանջում են ամենախիստ վերահսկողություն հասարակության ու պետության կողմից՝ աշխատանքի չափի ու սպառման չափի վրա...»*):

Սոցիալիստական հասարակությունը կո-

*) Լենին, Յերկերի ժող., հ. 21-րդ էջ՝ 437:

մունիստական հասարակության վերափոխելու գործը պահանջում է ամենաբարձր կազմակերպվածություն և ԽՍՀՄ աշխատավորների եներգիայի մոբիլիզացիա: Այդ ապահովվում է բանվոր դասակարգի պետական ղեկավարությամբ, նրա դիկտատուրայով, վորին ուղղություն է տալիս Լենինի-Ստալինի կուսակցությունը:

Մարքսը- Ենգելսը- Լենինն ու Ստալինը ճանաչել են, վոր կոմունիստական հասարակության մեջ պետությունը հարկավոր չի լինի և կմահանա: Մարքս-լենինյան այս ճիշտ դրույթը վերաբերում է ապագա հասարակարգին, վորը կհաստատվի կոմունիզմի համաշխարհային հաղթանակից հետո:

Առաջ կոմունիզմի ու պետության հարցը պարզաբանելիս մենք սահմանափակվում էինք մարքսիզմ-լենինիզմի մինակ այս դրույթով և կոմունիստական հասարակությունը բնութագրում էինք վորպես առանց պետության հասարակություն: Բայց այժմ, ավելացնում է ընկեր Ստալինը, յերբ մենք ընդհուպ մոտեցել ենք մի յերկրում կապիտալիստական շրջապատման պայմաններում կոմունիզմի բարձրագույն փազի



կառուցմանը, այս ընդհանուր թեորետիկական դրույթն արդեն բավական չէ: Պետության հարցը պետք է դրվի կոնկրետ կերպով, յելնելով կոմունիզմի համար մղվող պայքարի և կապիտալիստական շրջապատման առկայությամբ կոմունիզմ կառուցելու պայմաններից: Այժմ հարկավոր է պարզ կերպով ասել, վոր մեկ յերկրում կառուցված և կապիտալիստական յերկրներով շրջապատված կոմունիստական հասարակությունը անխուսափելիորեն պետություն պետք է ունենա: Այդ ուղղակի բղխում է Լենինի ու Ստալինի՝ մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի ու զարգացման վերաբերյալ ուսմունքից:

Քանի դեռ կա կապիտալիստական շրջապատում, շարունակում է գոյություն ունենալ իմպերիալիստների կողմից ԽՍՀՄ-ի վրա ռազմական հարձակման վտանգ, ինտերվենցիայի ու կապիտալիզմի ռեստավրացիայի վտանգ:

«...Մենք շրջապատված ենք այնպիսի մարդկանցով, դասակարգերով, կառավարություններով, վորոնք բացահայտորեն մեծագույն ատելություն են արտահայտում

դեպի մեզ: Պետք է հիշել, որ ամեն տեսակ արշավանքից մեզ միայն մի մազ է բաժանում»*):

Այդ պատճառով էլ խորհրդային ժողովուրդը պետք է միշտ մոբիլիզացիոն լիակատար պատրաստության մեջ գտնվի: Նա պատրաստ պետք է պահի հզոր Կարմիր բանակ, որն ընդունակ լինի ջախջախիչ հարված հասցնել ֆաշիստական գիշատիչներին:

Կապիտալիստական շրջապատումը ուղարկել և կուղարկի մեր երկիրը իր լրտեսներին, դիվերսանտներին ու մարդասպաններին: Այդ պատճառով Ներքգործժողկոմատի օրգանները առաջիկայում ևս հարկավոր կլինեն որպես ամուր պահապան ֆաշիստական հետախուզությունների գործակալներից, ժողովրդի բոլոր թշնամիներից:

Հետևաբար պետությունն անհրաժեշտ կլինի ոչ միայն սոցիալիստական, այլ և կոմունիստական հասարակության աշխատավորներին, քանի դեռ կա կապիտալիստական շրջապատումը: Պետությունը կսկսի

*) Լենին, Երկ. ժող. հ. 27-րդ, էջ 117:



մահանալ միայն այն ժամանակ, յերբ կապիտալիստական շրջապատումը կփոխվի սոցիալիստական շրջապատումով, յերբ սոցիալիզմը կհաղթանակի վճռական կապիտալիստական յերկրներում, որը կկանխորոշի սոցիալիզմի նաև համաշխարհային հաղթանակը:

Լենինիզմը սովորեցնում է, որ մեկ յերկրի ջանքերով հնարավոր չէ ապահովել սոցիալիզմի, այսինքն կոմունիզմի առաջին աստիճանի վերջնական հաղթանակը: Հնարավո՞ր է արդյոք մեկ յերկրում կառուցել կոմունիստական հասարակության բարձրագույն աստիճան:

Այս հարցին սպառիչ պատասխան է տվել ընկեր Ստալինը, մասնավորապես ընկ. Իվանովին տված պատասխանի մեջ: Ընկեր Ստալինը մատնանշում է, թե չի կարելի շփոթել սոցիալիզմի կառուցման հարցի յերկու կողմերը:

Մեկ յերկրում սոցիալիզմ (և կոմունիզմ) կառուցելու հարցը ընդգրկում է «ներքին հարաբերությունների բնագավառը»: Մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի համար պահանջվում եր հաղթահարել բանվոր դասակարգի ու գյուղացիու-

թյան միջև յեղած հակասությունները. սերտ աշխատակցություն սահմանել դրանց միջև. ջախջախել ու լիկվիդացիայի յենթարկել շահագործողական դասակարգերը. վերացնել մարդու շահագործումը մարդու կողմից. կառուցել սոցիալիզմ: Այս խնդիրներն իրագործված են: ԽՍՀՄ-ում հիմնականում կառուցված է սոցիալիստական հասարակություն:

Սոցիալիզմի յերկրի արտադրողական ուժերի հետագա զարգացումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, բանվորների ու գյուղացիների կուլտուրական-տեխնիկական մակարդակի բարձրացումը, քաղաքի ու գյուղի, ինչպես և մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև յեղած հակասության վոչնչացումը կապահովեն ԽՍՀՄ-ում կոմունիզմի բարձրագույն փազի կառուցումը: Սրա յերաշխիք հանդիսանում է բանվորների ու գյուղացիների անխախտելի դաշինքը, խորհրդային ժողովրդի աճող բարոյական-քաղաքական միասնությունը, Լենինի-Ստալինի կուսակցության ղեկավարությունը, մի կուսակցություն, վորը խորհրդային ժողովուրդը տանում է կոմունիզմի ուղիով:



ԽՍՀՄ-ի ներսում այլևս այնպիսի ուժեր չկան, վորոնք կարողանան կասեցնել կոմունիզմի շինարարությունը կամ խանգարել նրան: Իմպերիալիստական պետությունների գործակալներին՝ լրտեսներին, դիվերսանտներին, վնասարարներին և այլ թշնամիներին խորհրդային ժողովուրդը վորպես չնչին մժեղների ջնջում է իր ճանապարհից: Նա կարող է կառուցել և կկառուցի կոմունիզմի բարձրագույն աստիճանը: Կոմունիստական հասարակություն կառուցելու վճռական լծակը հանդիսանում է բանվոր դասակարգի դիկտատուրան՝ խորհրդային պետությունը:

Արդյոք չի հանվում սրանով սոցիալիզմի վերջնական հաղթանակի հարցը: Վոչ չի հանվում:

«Մեր յերկրում սոցիալիզմի հաղթանակի վերաբերյալ հարցի յերկրորդ կողմը ընդգրկում է մեր յերկրի՝ ուրիշ յերկրների, կապիտալիստական յերկրների հետ ունեցած փոխ-հարաբերությունների պրոբլեմը, մեր յերկրի բանվոր դասակարգի՝ ուրիշ յերկրների բուրժուազիայի հետ ունեցած փոխ- հարաբերությունների պրոբ-

լեմը: Այդ արտաքին, միջազգային հարաբերությունների բնագավառն է»*):

Քանի գոյություն ունի կապիտալիստական շրջապատումը, գոյություն կունենա նաև ՍՍՀՄ-ի դեմ ուղղված ռազմական ինտերվենցիայի վտանգը, կապիտալիզմի ռեստավրացիայի վտանգը: Ինտերվենցիայի ու ռեստավրացիայի փորձերի դեմ լիակատար յերաշխիք ստանալու համար պետք է վոչնչացնել կապիտալիստական շրջապատումը: Իսկ այդ շրջապատումը վոչնչացնել «հնարավոր է առնվազն մի քանի յերկրներում պրոլետարական հաղթական հեղափոխության հետևանքով միայն»**): Դրա համար պահանջվում է ՍՍՀՄ աշխատավորների ու միջազգային պրոլետարիատի միատեղ ջանքերը:

Կապիտալիստական շրջապատման առկայությունը պահանջում է պահպանել ու ամրացնել պետությունը կոմունիստական

*) Ընկ. Իվանովի նամակը և ընկ. Ստալինի պատասխանը, եջ 8: Կուսհրատ: 1938:

**) «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց», եջ 370: Պետքաղհրատ, 1938:



հասարակության մեջ, դեպի վորը մենք մեր յերկրում գնում ենք:

Միայն սոցիալիզմի հաղթանակը վճռական բուրժուական յերկրներում և կապիտալիստական շրջապատման վոչնչացումը կհասցնեն պետության մահացմանը:

(Սպուտնիկ ագիտատորա № 24—1938 թ.)



ԳԼԱՎԼԻՏԻ ԼԻԱԶՈՐ՝ № 7988

Պատվեր № 66, տիրաժ 8131
Հանձնված է արտադրության 25 հունվարի 1939 թ.: Ստորագրված է տպագրության 31 հունվարի, 1939 թ.:

ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԺՈՂԿՈՄԽՈՐՀԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՏՊԱՐԱՆ, ԵՐԵՎԱՆ

## ՎՐԻՊԱԿ

41-րդ էջում վերևից 1-ին տողում—տպված է՝ մարքսիստական, պետք է կարդալ մարքսիստական: